*ՎԱՀԱԳՆ ԿԱՐԵՆՑ*

# ՄԱՅԻՍԻ 1-Ը

Գարնան երգեր են գրում
Առուները մարգերում,
Արտույտները արտերում,
Կակաչները դաշտերում:
Ու վարթնում են ալ հագած՝
Քաղաքները տոնական,
Զինվորների մարտական
Քայլերգներից հաղթական:
Դու էլ խինդով քո սրտի
Դո՛ւրս եկ, ձուլվի՛ր այդ երթին,
Մարդկանց հոսող լայն գետին՝
Մայիսմեկյան շքերթին:

*ՎԱՐԴԳԵՍ ԲԱԲԱՅԱՆ*

# ԽՆՁՈՐԻ ԾԱՌԸ

Խնձորի քնած ծառին
Մատներով դիպար հուշիկ,
Ասացիր՝ հերիք քնես,
Աչքերդ բա՛ց, անուշիկ:
Թռչնիկը ահա նորից
Եկել է, քեզ է կանչում,
Ջրիկը՝ մոտիկ ձորից
Ինչպե՛ս է, տե՛ս, կարկաչում:

Խնձորի ծառը վարթնեց.
— Վա՛րդ մայիս, վվա՛րթ մայիս:
Աչքերը նազով թարթեց.
— Զա՛րդ մայիս, ազա՛տ մայիս:

Զուգեցիր ոտքից-գլուխ
Խնձորի ծառը փոքրիկ,
Հրդեհ էր ասես անծուխ,
Ա՛խ, այսքան ծիլ ու ծաղիկ:

Խնձորի ծառը վառվեց
Ու հարբեց իր իսկ հոտից,
Հովիկը հով-հով արեց
Ու չուզեց գնալ մոտից:

Նայեցիր ու ցնծացիր.
— Ա՛լ մայիս, ալվա՛ն մայիս,
Զուգեցիր աշխարհն անծիր:
— Վա՛ռ մայիս, պառ-վա՛ռ մայիս:

*Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ*

digitised by A.R.A.R.@

Երբ ամեն անգամ գարուն է գալիս
Ու պայծառորեն մայիսն է ժպտում,
Ինձ թվում է, թե կանգնած եմ նորից
Էլբայի ափին, մի արձակ դաշտում:

Գնդերը բոլոր իրար կողք-կողքի
Կանգնել են հպարտ՝ աչքերում ժպիտ.
Վերից արևն է շողում ջերմագին,
Ծառից նայում է կարմացած մի ծիտ:

Գեներալը մեր՝ շիկնած բերկրանքից,
Հաղթության լուրն է հուզված ավետում,
Ու զինվորների կոպերի տակից
Արցունքի վճիտ շիթերն են կաթում:

Հաղթության լուրը հուզված ավետում
Ու գեներալը իջնում է ծնկի,
Ծնկի են իջնում նույն ակնթարթում
Մարտերում կոփված ծոռները Հայկի:

*ԱՐՇԱԼՈՒՅՍ ՍԱՐՈՅԱՆ*

# ՄԱՅԻՍՅԱ՛Ն ՎԵՐՀՈՒՇ

Երբ գեներալը մեր հաղթանակի
Դրոշն է հուզված համբուրում, մեկից
Ալեկոծվում է զինվորի հոգին,
Ալ դրոշակն է դողում հուզմունքից:

Հետո ելնում են բոլորը ոտքի,
Դաշտում հաղթական ուռան է թնդում:
Հավար գարուն կա սրտում ամենքի...
— Ողջո՜ւյն քեզ, մայի՜ս, ողջո՜ւյն, հաղթությո՜ւն:

Երբ ամեն անգամ գարուն է գալիս
Ու պայծառորեն մայիսն է ժպտում,
Ինձ թվում է, թե լսում եմ նորից.
— Ողջո՜ւյն քեզ, մայի՜ս, ողջո՜ւյն, հաղթությո՜ւն...

---

*ՀԱՅԿ ՎԱՐԴԱՆՅԱՆ*

# ԿՏՐՎԱԾ ԾԱՌԵՐԻ ԽՇՇՈՑԸ

Ես նստած էի մեր ցախատան կտուրին, այն ծայրին, որը ստվերի մեջ էր: Աջ ոտքս ցած էի կախել, իսկ ձախը պարզել էի, որովհետև ցավում էր: Ես ընկել էի մեր երկու թթենիներից: Այո՜, երկուսից էի ցած ընկել. մի ծառից մյուսն էի ուզում անցնել և... առայժմ, չստացվեց: Բայց ես դեռ էլի կփորձեմ, սպասում եմ ոտքս լավանա:



Մեր թաղը հիմա լուռ է և տխուր: Մեկ ամիս առաջ բոլորը գնացին այստեղից: Չորս կողմը նրանց կիսաքանդ տներն են: Գագիկենք ու Ստեփանենք հիմա Նորքի կանգվածում են, Գեղամենք՝ Մալաթիայում, Աշոտենք ու Անահիտենք՝ կայարանի կողմերը, Արամենք՝ Աջափնյակում, իսկ Վարուժանը՝ իմ № 1-ին թշնամին, հիմա Զեյթունում է: Լավ պրծավ:

Մենք երեք տարի թշնամի էինք, երրորդ դասա-

digitised by A.R.A.R.@

*ԱԲԻԳ ԱՎԱԳՅԱՆ*

# ՀԱՍՈՒՆԱՑՈՒՄ

*Այս դեպքը պատահեց աշնանավերջին, մի ցուրտ առավոտ, երբ Արփիկը դուրս եկավ տնից և բռնեց դպրոցի ճամփան: Մի քանի ոլորապտույտով կառիվայր ծառուղին իջնում էր դեպի ասֆալտապատ ճանապարհը: Դեռ ճանապարհին չհասած, աղջիկը նկատեց ծառի տակ, թափված տերևների կույտի վրա նստած մի փոքրիկ, սպիտակ, սուր դնչիկով շնիկի: Նա ցեխոտ էր ու թրջված, ականջները կախ էին ընկել և չգիտես ինչու բարձրացրել էր մի ոտքն ու դողում էր, ինչպե՜ս էր դողում...*

*Աղջիկը կռացավ և սկսեց հետաքրքրությամբ ու խղճահարված նայել շանը: Թրջված ու ցեխոտված մորթուց հնարավոր չէր որոշել նրա իսկական գույնը: Այն, ինչ որ և՛ հետաքրքիր էր, և՛ ծիծաղելի՝ դա նրա սուր, սպիտակ դունչն էր, որը մի տեսակ որոշակի աչքի էր վարնում ամբողջ մարմնի գորշության մեջ:*

*— Դու երևի սոված ես, չէ՞,— հարցրեց Արփիկը:*

*Շունը կամացուկ կաղկանձեց և սկսեց ավելի դողացնել:*

*«Պարզ է,—մտածեց աղջիկը,— նա ասում է՝ և՛ քաղցած եմ, և՛ մրսում եմ»:*

*Արփիկը պայուսակից հանեց*

բանից: Բոլորը գնացին, ու չորս կողմը նրանց կիսաքանդ տներն են, դրանց տեղում շատ մեծ շենք պիտի կառուցեն: Մեր տունը մի կողմ էր ընկած, դրա համար էլ առայժմ չքանդեցին:

Ու հիմա ես մենակ նստել եմ մեր ցախատան կըտուրին, մի ոտքս կախել, մյուսը, որ ցավում է, պարկել ու չգիտեմ էլ ի՞նչ անեմ:

Բակում Ռեքսը գռմռաց ու մի քանի անգամ հաչեց: Ես լարեցի լսողությունս ու ինձ թվաց քայլերի ձայն եմ լսում: Բայց հետո Ռեքսը լռեց, իսկ ես ինչքան էլ փորձեցի մի բան լսել կամ տեսնել՝ չկարողացա:

Մեկ էլ, կիսաքանդ պատերի արանքում հայտնվեց մի տղա: Աջ ու ձախ նայեց ու քայլեց դեպի հին աղբյուրի կողմը:

Ա՜յ քեզ հրաշք, սա հո Վարուժանն է, իմ № 1 թշնամին: Սրան ես անհաշիվ անգամ ջարդել եմ... մի այդքան էլ՝ նա ինձ... Մենք ժամերով, կտուրից կտուր, քարերով կռվել ենք, մեր դասակները իրար դեմ կռվի են գնացել... Մենք երկուսս էլ երդվել էինք մինչև վերջ թշնամիներ մնալ, որտեղ էլ որ լինենք, ինչքան էլ հեռու գտնվենք իրարից: Եվ հիմա՜... նա՜... Վարուժա՜նը... կցավեմ... ափսո՜ս, որ ոտքս ցավում է:

— Է՛յ, ի՞նչ ես անում: Ո՞վ ես:

— Չե՞ս ճանաչում:

— Ասենք, ճանաչում եմ: Ի՞նչ գործ ունես այստեղ: Չքվի՛ր, քանի...

— Քանի ի՞նչ:

— Քանի շանը վրադ չեմ թողել: Ինչու՞ ես եկել: Ռե՛քս, կծի՛ր:

Ռեքսը բակի դռան տակի բացվածքից դուրս վազեց փողոց և նկատելով Վարուժանին՝ ուրախ հաչեց:

— Կծի՛ր,— հրամայեցի ես,— դու չգիտե՞ս, որ դա իմ № 1 թշնամին է:— Բայց նա էլի ուրախ հաչում է:— Լավ, ես քեզ ցույց կտամ: Տե՛ղդ գնա:— Ռեքսը պոչն իրեն քաշած, կռանում ու ներս է սողում:— Ինչո՞ւ ես եկել:

— Գործով:

— Մի՛ փչիր, ի՞նչ գործով:

— Մեր շունը կորել է, չկա:

— Բոբի՞ն:

— Այո՛, շենքի բակում էր մնում... տանը չէինք կարող պահել... երեխաները քարերով խփում էին... այսօր առավոտվանից կորել է:

— Իհարկե, նեղացել է:

— Ուզում եմ տեսնել, այստեղ չի՞ եկել:

— Չէ՛, չի եկել: Կատու հո չի՞, որ... Շունը տիրոջ մոտ է մնում...

— Գիտեմ: Բայց մի քիչ էլ կսպասեմ:

— Ինչքա՞ն:

— Ինչքան, որ ուզենամ: Մինչև տեսնեմ կգա՞, թե՞...

— Համաձայն չեմ: Քեզ հինգ րոպե ժամանակ եմ տալիս:

— Ես մեր տանը կսպասեմ:

— Տո՞ւն, ի՞նչ տուն: Մի պատով տունը տո՞ւն է: Այս թաղը հիմա մերն է ու իմը:

Բայց, չգիտես ինչու, Վարուժանը չվախեցավ ու գնաց իրենց տան կողմը: Նա տեղավորվեց միակ կանգուն պատի շրջանակը հանված պատուհանի մեջ: Դա նրա սիրած տեղն էր: Այդ պատուհանի մեջ էր նա սովորում բանավորները և գեղարվեստական գըրքեր կարդում: Ես կարծում էի, որ շատ ծիծաղելի է, այդպես, պատի մեջ նստելը, որովհետև այդ արդեն տուն չէր: Բայց նա այնպես առաջվա պես էր՝ նստել, ծնկները բարձրացրած, և այնպես էր նայում չեղած պատուհանից, որ կարծես ոչինչ չէր փոխվել, ոչինչ չէին քանդել, չէին կտրել ծառերը: Ա՛յ, այնտեղ Գագիկենց ու Ստեփանենց բակն է, նրանց կողքին Գեղամենք են... մի քիչ այս կողմ, իրար կպած, Աշոտենց






digitised by A.R.A.R.@

*թղթի մեջ փաթաթած իր նախաճաշը, որը պիտի ուտեր մեծ դասամիջոցին՝ կարագ քսած երկու կտոր հաց, երշիկի մի քանի բարակ շերտ և մի խնձոր: Հացն ու երշիկները նա մեկնեց շնիկին, շնիկը հափշտակեց ու մեծ կտորներով կուլ տվեց՝ համարյա առանց ծամելու, լիզեց դունչը և նորից աչքերը պլշեց Արփիկի ձեռքին:*

*— Ի՞նչ է, շունը խնձոր կուտի՞,— ասաց աղջիկը ու մատներով կգույշ շոյեց նրա թաց գլուխը:*

*Մեծ դասամիջոցին, երբ Արփիկն իր խնձորն էր ուտում, հիշեց շանը: «Տեսնես որտե՞ղ է նրա մայրը,— մտածում էր,— գուցե գնացել էր ձագի համար կեր ճարելու և հիմա վերադարձել է... Գուցե նա առանց մորն ասելու դուրս է եկել ու ճանապարհը կորցրել»:*

*Արփիկենց տունը գտնվում էր անտառեզրին: Դպրոցից տուն վերադառնալիս, երբ նա ճանապարհից դուրս եկավ ու սկսեց բարձրանալ վառիվեր ծառուղով, դեռ հեռվից նկատեց շնիկին, որը պոչը խաղացնելով իրեն ընդառաջ էր գալիս: Ամպերի արանքից արևը կարճ ժամանակով դուրս էր եկել, և շնիկի մորթը չորացել էր, մազերին կպած ցեխն էլ էր չորացել ու հիմա նա ավելի կեղտոտ ու ավելի ծիծաղելի էր թվում: Արփիկը նստեց պայուսակի վրա, մոտ կանչեց շանն ու սկսեց շոյել նրա գլուխը: Շունն ուրախ կաղկանձում էր, փռվում էր խոտերին,- հետո վեր ցատկում, լիզում էր Արփիկի ձեռքերը:*

*«Ի՞նչ անեմ,— մտածեց աղջիկը,— քեզ չեմ կարող տուն տանել, մայրիկը տան մեջ նույնիսկ ամենաաննշան անմաքրություն*

ու Անահիտենց բակերն են: Այն մեկն էլ Արամենց՝ առանց բակի տունն է... Իսկ Վարուժանը, նստած իրենց փոքր սենյակի պատուհանում, դուրս է նայում:

Ու հանկարծ թեթև քամի բարձրացավ և խշշացին բոլոր կտրված ծառերը:

— Է՜յ,— կանչեցի ես,— հինգ րոպեն լրացա՞վ:

— Դեռ չէ՜,— ձայն տվեց Վարուժանը:

— Ափսո՜ս, որ ոտքս ցավում է,— ասացի ես ցածրաձայն:

Մենք էլի մի քիչ լուռ մնացինք ու նորից լսեցինք կտրված ծառերի խշշոցը:

Ծառերը կտրատել էին սղոցներով, կացիննե;ռով. արմատահան արել բուլդոզերներով:

— Ոտքդ ի՞նչ է եղել,— հարցրեց Վարուժանը:

— Ընկել եմ, ծառից ծառ էի անցնում, ճյուղը չդիմացավ, կոտրվեց:

— Չլինի՞ ոտքդ կոտրել ես:

— Չէ՛, չէ՛, ցավացրել եմ: Վաղն արդեն ապատման կգամ:

Մենք էլի մի քիչ լուռ մնացինք:

— Տղաները չե՞ն երևում,— հարցրեց նա:

— Ոչ ոք չի գալիս,— ասացի ես:

— Գնամ,— պատուհանից դուրս գալով կանչեց նա:

— Մի՛ գնա: Հինգ րոպե էլ կարող ես մնալ: Գուցե Բոբին գա:

— Չէ՛, գնամ: Բոբին չի գա:

— Ինչու՞: Կգա:

— Չի գա,— տխուր ասաց Վարուժանը:

— Սպասի՛ր, թե չէ... Գիտե՞ս...— սպառնացի ես:

Վարուժանը կարծես չլսեց ինձ, շարունակեց գնալ, հեռանալ: Ես ուզում էի ձայն տալ, ասել, որ՝ վաղն էլ արի... որ Բոբին վաղը կամ մյուս օրը անպայման կգա, բաց չկարողացա:

Նա շատ հեռացավ ու քառակուսի մեծ շենքի մոտ ետ նայեց ու ձեռքով արեց: Ես պատասխանեցի նրան: Նա անցավ շենքի ետև:

Ի՞նչ անեմ: Կանչում եմ Ռեքսին: Նա շատ արագ ցատկում է իր բնի վրա, այնտեղից էլ՝ ցախատան կտուրը: Գլուխը դնում է գոգս: Ես նայում եմ նրա տխուր աչքերին և շոյում գլուխը ու լսում կտրված ծառերի խշշոցը:

*Նկ. ՌՈԲԵՐՏ ԱՅՎԱԶՅԱՆԻ*



5665

digitised by A.R.A.R.@

նկատելիս նկատողություն է անում, էլ ուր մնաց քեզ, որ դնչից մինչև պոչիդ ծայրը ցեխ ես ու անմաքրություն»:

Միևնույն է, շնիկը գնաց Արփիկի ետևից, գնաց նրա ստվերի նման: Մի քանի անգամ աղջիկը կանգնեց, ոտքը խփեց գետնին.

— Կորի՛ր:

Շնիկի համար այդ մեղմ սպառնալիքը նշանակություն չուներ:

Արփիկը տուն մտավ և դուռը շրխկոցով փակեց: Հետո պատուհանից տեսավ, թե ինչպես նա նստել է դռան մոտ, արևկող պատի տակ:

Երբ հայրիկը և մայրիկը աշխատանքից եկան ու ճաշն ավարտվեց, Արփիկը մի կոտրված ափսե գտավ, մեջը լցրեց ճաշի առատ մնացորդը և տարավ դրեց շան առջև: Շունը կարմանալի արագ կուլ տվեց կերակուրն ու այնպես լիզեց մաքրեց կոտրված ափսեն,



որ թվում էր, թե այն օճառով հենց նոր են լվացել:

— Այդ ի՞նչ գործի ես, Արփի՛կ,— մայրն էր, որ նայում էր լուսամուտից:

— Այսօր դպրոց գնալիս տեսա, մա՛մ, երևի մորը կորցրել է:

— Ձեռք չտաս իրեն, կեղտոտ է, ափսեն ներս չբերես:

Այդպես, սպիտակ դնչով շնիկը դարձավ Արփիկենց տան դրսի պահապանը: Կանոնավոր վայելում էր տերերի նախաճաշից, ճաշից և ընթրիքից ու քնում էր պատի տակ կուտակված տերևների և չոր խոտերի վրա: Մեկ-մեկ գիշերները, երբ տան մոտի ծառուղուց որևէ ուշացած ճամփորդ էր գնում կամ որևէ անծանոթ մոտենում էր դռանը, շունը հաչում էր և հայրիկն ուրախանում էր, որ դրսում արթուն պահակ ունեն:

— Անունն ի՞նչ է,— մի անգամ հարցրեց նա աղջկան:

— Չգիտեմ, հայրի՛կ, դեռ անուն չունի:

Տատիկը թախտին, իր սովորական տեղում նստած, բրդյա թելերով շալ էր գործում: Նա ակնոցը քթից տարավ ճակատին, հոգոց քաշեց և ասաց.

— Ողորմած հոգի հայրդ, Գեղա՛մ, մի գամփռ ուներ, դու, իհարկե, չես հիշի, անունը Կծան էր: Փիս մարդիկ նրան սպանեցին, բայց դե նա իսկական գելխեղդ էր, սա ի՞նչ է նրա մոտ:

Արփիկը իր շան անունն էլ դրեց Կծան:

Ձմեռը մոտենում էր: Բլրալանջերին ձյան բարակ շերտեր էին նստել: Պարկկա գիշերներին փչում էր սուր, ծակող քամի: Կծանը դրսում թաղվում էր չոր տերևների կույտերի մեջ, բայց չէր տաքանում: Մի օր էլ, երեկոյան, երբ նրանց մոտ էր եկել անտառապահ քեռի Վարոսը և դրսի դուռը կիսաբաց էր մնացել, Կծանը մեկ էլ աննկատելի ներս մտավ: Դրսում սառնամանիք էր և բքից նույնիսկ ծառերն էին ճռճռում, էլ ուր մնաց կենդանի արարածը: Հիանալի տաք սենյակում նա նստեց դռան մոտ, սպիտակ դունչը ցցեց ու սկսեց նայել իրեն բևեռված մարդկանց կարմանք արտահայտող աչքերին: Մի քանի վայրկյան այդ քարացած լռության մեջ Արփիկը շան աչքերում կարծես կարդաց նրա միտքը. «Ինչ ուզում եք արեք, միևնույն է, ես հո չե՞մ սառչելու դրսում»:

— Սա ի՞նչ բան է, հը՞, Արփի՛կ,— հարցրեց մայրը:

Եվ աղջիկը մտածեց. «Եթե մաման նրան դուրս անի, ես լաց կլինեմ»:

— Պարզ չէ՞,— կատակեց հայրիկը,— իր իրավունքն է պաշտպանում, ոչ ոքի համար էլ հաճելի չէ դրսում ցրտից փայտանալ:

Անտառապահ քեռի Վարոսը մի լավ ուսումնասիրեց շանը, նայեց ականջներին, դնչին, պոչին և ուսերը վեր քաշեց:

— Սատանան էլ գլուխ չի հանի այս հայվանի ցեղից,— հայտարարեց նա,— գլուխն ու ականջները սովորական բակապահ շան ցեղից է, դունչը՝ աղվեսային, մեջքը երկար է թաքսի մեջքի նման, իսկ պոչը ոնց որ խոզի պոչ լինի, մի խոսքով՝ շիլաշփոթ շուն է:

Ինչ լավ էր, որ բոլորը ծիծաղեցին և մայրիկի վայրույթն էլ անցավ:

— Արփի՛կ,— ասաց նա,— թող պատշգամբո՛ւմ մնա, չլինեմ-չիմանամ սենյակին սովորեցնես:

Պատշգամբի մի անկյունում Արփիկն ինչ-որ հնոտիքից տեղ պատրաստեց, և այսպիսով Կծանը այդ հարմարավետ հարկում ունեցավ իր մասնավոր անկյունը:

Այդ բոլորը քիչ էին, Կծանն իր նոր միջավայրում շատ առաջ քաշվեց. աղջիկը տանը մի դատարկ արկղ գտավ, հնոտիքից ներքնակի նման մի բան պատրաստեց, և մի օր էլ տատիկն ասաց.

— Արփի՛կ, դու լավ կանես շանը տաք ջրով լողացնես, վրայի ցեխն ու կեղտը մաքրես, նայել չի

digitised by A.R.A.R.@

լինում: Քանի մայրդ տանը չէ՝ արա, թե չէ...

Արփիկը Կծանին քաշեց տարավ ցնցուղի տակ ու մեծ դժվարությամբ օճառով լողացրեց, լաթերով չորացրեց, վզին կապեց սպիտակ մի հին ժապավեն և ծոծրակին վարդակապ արավ: Հիմա արդեն որոշակի երևան եկավ նրա մորթու գույնը, որը մուգ շագանակագույն էր ու դունչը՝ բամբակի պես սպիտակ: Սակայն որքան էլ որ նրան կուզեին կարդարեին, միևնույն է, Կծանը սիրուն չէր, նա ավելի շատ երկարում էր, քան մեծանում:

Պատշգամբում նա հանգիստ ու կուշտ ապրեց մինչև գարուն:

Մի օր, ճաշից հետո, երբ աղջիկը պատշգամբի ստվերում նըստած դաս էր պարապում, հանկարծ տեսավ, թե ինչպես Կծանը թռավ բազրիքին և այնտեղից ցատկեց ցած: Պատշգամբն այնքան էլ բարձր չէր, գետնից հազիվ մի մարդաբոյ: Քիչ հեռու, ծառերի տակ, խոտերը հոտոտելով մի ինչ-որ դարչնագույն ու սև խալերով շուն էր թափառում: Կծանը վազեց դեպի այդ շունը, և նրանք մի րոպե կանգնեցին դեմ-դիմաց: Արփիկը նայում էր նրանց և թվում էր, թե նրանք դունչ-դնչի ինչ-որ բան են միմյանց ասում: Հետո սև խալերով շունը շուռ եկավ ու գնաց դեպի աջ՝ անտառը տանող արահետով:

Այդպես է. թափառաշրջիկ շները չեն սիրում անդորրավետ սենյակներում երես առած շներին, որոնց վրայից օծանելիքի կկվելի հոտ է գալիս, իսկ Կծանին, ըստ երևույթին, դուր եկավ այդ կեղտոտ, գզվռտոցներից բզիկ-բզիկ եղած ականջներով անտեր-անտուն շունը: Նրա վրայից իր ցեղի հոտն էր գալիս, հեռու- հեռավոր հարապատ հոտ, որտեղ խտանում էին կոճղերի, խավալի, եղևնու խեժի, երեկոյան վերադարձող նախրի բարձրացրած փոշու, գարնանային կանաչ անձրևների, առվույտների ու էլի հազար-հազար տեսակ բուրմունքներ:

Եթե Արփիկը չցատկեր պատըշգամբից ու չհասներ Կծանին, ապա նա կգնար դեպի անտառը: Աղջիկը նրան տուն բերեց, և քանի որ շունն անհանգիստ էր ու ամեն վայրկյան փախչելու վտանգ կար, նրան պարանով կապեց բազրիքի ճաղին:

Ամբողջ գիշեր նա կաղկանձում էր, հաչում, հետո էլ սկսեց սուր ձայնով ոռնալ:

— Անտանելի է,— առավոտյան ասաց մայրը,— արձակե՛ք շանը, թող կորչի գնա:

Սակայն ոչ ոք ՝չկարողացավ մոտենալ նրան: Մի գիշերվա մեջ ինչպես էր փոխվել՝ ծոծրակի մազերը ցցվել էին, ցցվել էր նաև պոչը, ով հանդգնում էր մոտենալ, նա գռմռում էր, շրթունքները ետ էին քաշվում՝ երևան հանելով սուր, սպիտակ ատամները:

— Ըհը՛,— ասաց մայրը,— մեր լավություններին ատամներով է հատուցում:

Տատիկը խորհուրդ տվեց.

— Կտրեցե՛ք պարանը, թող գնա, մեկ է, նրան շղթաներով էլ չեք կարող պահել:

Կոտրված ափսեի ուտելիքին Կծանը չէր մոտեցել, միայն ջրամանն էր դատարկ: Հիմա նա նստել էր բազրիքի ճաղերի մոտ ու ճաղերի արանքից դունչը ցցել էր դեպի այն արահետը, որտեղով գնաց սև խալերով թափառական շունը:

Արփիկը մկրատը բերեց և կըտրեց պարանը, քանի որ հնարավոր չէր կատաղած շանը մոտենալ:

Կծանը կայծակի արագությամբ ցատկեց բազրիքից ու վզին կապած պարանը քարշ տալով գնաց դեպի ազատությունը, բայց նա, այնուամենայնիվ, անտառի եզրին կանգ առավ, շուռ տվեց գլուխն ու



Նկ. ԳՐԻԳՈՐ ԹՈՐՈՍՅԱՆԻ

ետ նայեց իր տուն ու տեղին, իր սեփականությանը, իր տերերին: Ի՛նչ լավն էր այդ հետադարձ հայացքը. պատշգամբում կանգնած մարդիկ բոլորն էլ այդ հասկացան, բայց հասկացան յուրովի:

Տատիկից բացի, մնացածը համոզված էին, որ չի վերադառնա:

Իսկ տատիկը, որն արդեն պառավել էր ու այս կարմանալի աշխարհում տաքն ու պաղը շատ էր ճաշակել, ակնոցն աչքերից դեպի ճակատը տարավ և մի տեսակ իմաստալի հանդիսավորությամբ հայտարարեց.

— Կվերադառնա՛... խելքը գըլխին մարդու մեջ էլ մեկ-մեկ սատանա է մտնում, երեսը շուռ է տալիս տուն ու տեղից, բայց էլի քոռ ու փոշման ետ է գալիս, որովհետև արար աշխարհում տնից լավ տեղ չկա:

* * *

Կծանը վերադարձավ վեց օր հետո:

Նա վերադարձավ ցեխոտված, ծեծված, նիհարած, գլուխն ու ա-



digitised by A.R.A.R.@

կանչները քարշ արած, երբեմնի ժապավենն ու երբեմնի պարանը վզին:

Դուռը կիսաբաց էր, ու նա ներս մտավ, նստեց միջանցքում, սենյակի բաց դռան մոտ, և նայեց սեղանի շուրջը նստած մարդկանց:

— Համեցե՛ք,— ասաց տատիկը:

Այդ ժամանակ տատիկը երջանիկ էր, որովհետև նա շահել էր աշխարհի բոլոր գրավներն ու խաղերը:

Մայրը ձեռքի գդալը շրխկացրեց սեղանին ու ճչաց.

— Դո՛ւրս կորիր, չհամարձակվե՛ս:

Շունը միայն Արփիկին էր հառել իր աչքերը, և այդ աչքերն ասում էին. «Դե լա՛վ, ներողամիտ եղեք, բարի՛ տերեր, ամեն մարդ էլ կյանքում սխալվում է...»

Հայրիկը նորից կատակեց.

— Արփի՛կ, մոշի մուրաբայով թեյ տուր դրան, ճանապարհին մրսած կլինի:

Եվ ի՜նչ լավ էր, որ ծիծաղեցին, և ի՜նչ լավ էր, որ մայրիկի վայրույթն անցավ:

Արփիկը Կծանին տարավ պատշգամբ, ճաշ դրեց առջևը, սակայն շունը չկերավ: Նա ձգվեց հազար տարի առաջ իր համար հատկացված անկյունում, դունչը դրեց թաթերին և աչքերը փակեց:

Աղջիկը երկար նայում էր նրա փակ կոպերին ու չէր հասկանում, թե դրանք ինչո՞ւ են դողում:

... Դողում էին, Արփի՛կ, որովհետև դրանց տակ երազներ էին խլրտում, վեց երկար ու անսպառ օրերի կուտակված երազներ՝ համեմված եղևնիների խեժի և խավկալի բուրմունքներով, թավուտների, առվակների փռված ցողի խոնավությամբ, սարերից իջնող իրիկնամուտային նախրի փոշիով, գիշերահավերի կանչերով, աստղերի բույլով, կանաչ անձրևներով...

---

ԼՈՒՍԻԿ ԲԱՌՆԱԿՅԱՆ

# ՄՏՔՈՒՄ ԳՐՎԱԾ ՇԱՐԱԴՐՈՒԹՅՈՒՆ



Զանգը հնչել էր, վաղուց...

Ուսուցչուհին դասարան էր մտել, վաղուց...

Երեխաները շարադրություն էին սկսել գրել, վաղուց...

Բոլորը դասարանում էին, միայն Լևոնը չկար:

Ահա ներս է մտնում նա: Շատ է ուշացել:

— Հենց այդտե՛ղ էլ կանգնիր ու նայիր, թե ինչպես են ընկերներդ գրում: Դու չգիտեի՞ր, որ առաջին ժամին շարադրություն եք գրելու,— ասաց ուսուցչուհին:

Լևոնը կանգնել էր՝ պայուսակը երկու ձեռքով ծնկներին սեղմած: Նա ուզում էր ինչ-որ բան ասել, բայց ուսուցչուհին նրան ոչինչ չհարցրեց:

Լևոնը նայում էր ընկերներին: Նրանք շարադրություն էին գրում: Նա ձեռքին գրիչ չուներ, տետր էլ չուներ: Ու տղան շարադրություն է գրում մտքում:

«Գիշերը սաստիկ անձրև էր եկել: Ծառի բնի մոտ մի մեծ փոս կար, մեջը՝ լիքը ջուր: Ծնծղուկի ձագուկն ընկել էր ուղիղ անձրևաջրի մեջ ու խեղդվում էր: Ծառի ճյուղին կանգնած մայր ծնծղուկը աղերսում էր. «Ա՜յ բարի տղա, օգնի՛ր իմ բալիկին, խնդրում եմ...» Տղան իսկույն պայուսակը դնում է մի կողմ ու մոտենում է: Ծնծղուկի փոքրիկ ձագուկը ամբողջովին թրջվել ու դողում էր: Տղան երկարացնում է ձեռքը, իսկ նա վախենում է: Ի՞նչ էր մնում տղային: Նա մտնում է ջրի մեջ ու հանում ձագուկին:

Մայր ծնծղուկն ուրախությունից կորցնում է իրեն:

«Շնորհակալությո՜ւն, փոքրի՛կս, շնորհակալությո՜ւն»:

Ի՞նչ անել, թաց ոտքերով դպրոց գնալ, նշանակում էր հիվանդանալ.. Տղան տուն վազեց, փոխեց կոշիկներն ու գուլպաները:

Նա արդեն դասից ուշացել էր...»

Դաս է:

Բոլորը շարադրություն են գրում:

Լևոնն էլ է գրում շարադրություն, բայց՝ մտքում...

Ափսո՜ս, նրա գրած շարադրությունը ոչ ոք չէր կարդալու:

digitised by A.R.A.R.@

*ՆԱԻՐԻ ԶԱՐՅԱՆ*

# ՀԱՅՐՍ

Ես մինչև այսօր էլ երևակայությամբ տեսնում եմ նրան: Բարձրահասակ, թիկնեղ, շեկ առատ բեղերով. փոքրիկ քթով, ցավոտ կապույտ երազուն աչքերը հառած մի մինուճար որդու, այսինքն՝ իմ ապագային: Մորս ազդեցության տակ նա էլ էր հավատում, որ ես ինչ-որ բան կդառնամ: Գյուղական տեխնիկ կամ ռես:

Այնքան մեծամարմին էր, որ ես հաճախ զարմանում էի, թե ոնց է ծնվել իմ այդ մատնաչափ տատիկից:

Պսակվելուց առաջ գնացել էր Բաքու՝ փող վաստակելու, մի կույգ եզ առնելու և սեփական արոր լծելու հույսով: Աշխատել էր Բալախանի նավթահանքերում, հիվանդացել էր, ոտը կոտրել ինչ-որ երկաթի վրա, ծանր բեռներ շալակելուց երակների լայնացում ստացել և մի տարի հետո վերադարձել էր Խառակոնիս՝ հետը բերելով իր նախկին չքավորությունը և մի հիվանդ ոտք:

Հենց այդ օրերին պսակվել էր մորս հետ և ստացել նրա օժիտը՝ մեր Գյադուկի սակավաբեր հողամասը: Մենք ունեինք նաև մի կով՝ կարմիր, նիհար, ճակատը չալ, ծուռ Սալաթը ,որ երկու տարին մի անգամ էր ծնում և կաթ քիչ էր տալիս: Այնուհանդերձ գյուղում ուներ մեծ հռչակ, որովհետև շարունակ գնում էր նախրի առաջից:

Իսկ իմ պապից հայրս ժառանգել էր միայն մի վիրավորական մականուն: Այդ չարաբաստիկ փլավ չուտելու դեպքի առիթով, երբ գութանավորները պապիս վրա ծիծաղում են, պապս վիրավորվում ու լաց է լինում: «Չե՞ս ամաչում, տո՛,— ասում են գութանավորները,— հետդ հանաք ենք անում, դու լռում ես...» Եվ անունը դնում են «Զռան»: Հորս էլ հետևից ասում էին՝ «Զռանի Եղո»:

Ահա իմ հոր ամբողջ ունեցվածքը:

Դրանով նա չէր կարողանում կերակրել իր մեծ ընտանիքը: Դրա համար վարձու աշխատանք էր կատարում ունևոր գյուղացիների մոտ: Հաճախ էլ ձրի էր աշխատում: Մեր հարևանները, մանավանդ չունևոր կանայք, հորս օգնությանն էին դիմում, երբ հարկավոր էր քանդված պատը նորոգել, տան կաթող կտուրը սարքել, մանավանդ շալակով աղուն տանել ջրաղաց: Վնասված ոտքը չէր խանգարում, որ իմ աժդահակ հայրը հինգ փթանոց ջվալը փետուրի հեշտությամբ ուսն առներ և անցներ մոտ մի կիլոմետր տարածություն՝ ջրաղացը հասցնելու համար: Վարձատրությունը լինում էր «աստծու հավար օրհնությունը»:

Իմ հայրը շատ բարի էր և մնափառ: Մարդկանց օգնելուց նա ստանում էր մեծ բավականություն: Մանավանդ, երբ դրա համար նրան օրհնում էին և գովում:

Մեր թաղում կար Մկրտչյանների հարուստ գերդաստանը, բաղկացած մի քանի տնից: Մկրտչյան եղբայրներից մեկն ուներ շատ գեղեցիկ մի կին, անունը՝ Գյուլիզար: Իմ հայրը պատրաստ էր առավոտից մինչև երեկո նրանց համար ձրի գործ կատարել, միայն առիթ ունենար տեսնելու Գյուլիզարին: Այդ անպիտան Գյուլիզարը շատ լավ էր հասկացել հորս բնավորությունը: Ժպտում էր նրան, գովում և ձրի բանեցնում: Իսկ մեր տան կարիքները հայրս հաճախ մոռանում էր հոգալ:

Մայրս անշուշտ գիտեր սյդ և հորս հանդիմանում էր.

— Ուրիշի եկրականը կերթաս, քո կալատակը չես երթա:

Եկրականը կամին լծված այն եզն է, որ քայլում է կալի եզրից և ուրեմն ավելի արագ: Կալատակը այն եզն է, որ քայլում է ներսից, թեղի շուրջը, ուրեմն, ավելի դանդաղ: Մայրս իր մարդուն ուզում էր ասել, թե դու ուրիշի տան դժվար գործերը կատարում ես, քո տան հեշտ գործերը չես կատարում:

Դա իմ հորը տրված պատկերավոր ճշմարիտ բնութագիրն էր, որից նա վիրավորվում էր և կայրանում.

— Կարոյի՛ աղջիկ, ձենդ կտրի՛ր:

— Ինչու՞ ձենս կտրեմ,— ասում էր մայրս:— Մինչև ե՞րբ դու տունդ անտեր թողած, Մկրչենց Գյուլոյին ձրի մշակություն անես:

Հայրս պատասխանում էր արդեն բռունցքներով: Տատս ու հորաքույր Ալմոն չէին միջամտում: Նախ նրանք այն կարծիքն ունեին, որ սեփական կնոջը ծեծելը ամեն մի իսկական տղամարդու բնական իրավունքն էր: Անկախ այն պարագայից, իրավացի է թե ոչ: Երկրորդ՝ նրանք էլ մորս հետ ընդհարվելիս, խոցվում էին նրա հանգիստ և անողոք տրամաբանությունից, ուստի հայրս իր կնոջը ծեծելով, նրանց վրեժն էլ էր հանում:

Ձմեռվա և գարնան տոներին, մասնավորապես Բարիկենդանի և Հարության ժամանակ մեր գյուղի տղամարդիկ խումբ-խումբ շրջում էին տները, տոնը շնորհավորելու և օղի խմելու համար: Հորս հետ սիրով էին ընկերանում, որովհետև նա լավ ձայն ուներ և քրդերեն խաղ էր ասում: Առավոտվանից ման էին գալիս տնետուն, երեկոյան հարբած վերադառնում էին, ծեծում իրենց կանանց, մտնում տեղաշորը և մինչև մյուս օրվա ճաշը խռմփացնում:

Հայրս այդ օրը տուն չվերադարձավ: Առավոտյան ամբողջ գյուղում տարածվեց, որ նա բարձրանում է Գյուլիզարենց ախոռի կտուրը, ոտները կախում է նրանց երդիքից և խաղ է կանչում: Մեր թաղի շները



digitised by A.R.A.R.@

հավաքվում են հորս չորս բոլոր և սկսում են վրան հաչել:

Հայրս նրանց հետ կռույց է անում.

— Ինձ մի՛ կծեք, հարևաննե՛ր, վրաս էլ մի՛ հաչեք: Ես հարբած եմ:

Դա մեր թաղի երեխաներին նոր առիթ ընծայեց ինձ վրա ծիծաղելու: Հենց որ մեկին խաղի մեջ հաղթում էի կամ հետը կռվում, նա փախչում բարձրանում էր իրենց տան կտուրը և այնտեղից բղավում.

— Ես հարբած եմ...

Այդ առիթով ես հորիցս խռովեցի և մի շաբաթ հետը չէի խոսում:



Հայրս ամառը դեսուդեն էր վարձվում հաց վաստակելու համար, ձմեռը վարձվում էր իբրև ձիթհանքի բանվոր:

Խառակոնխացիք, հացահատիկներից բացի, ցանում էին կտավհատ, ոմանք էլ՝ նաև կանեփհատ: Ձմեռները կտավհատը ձիթհանքում մշակում էին, ձեթ ու քուսպ էին ստանում, ձեթը կերակուրների մեջ գործածելու, քուսպը անասուններին կերցնելու համար:

Ձիթհանքի գլխավոր վարպետը հորս հորեղբայր Ուստա Կապարն էր, որ մեր ընտանիքին օգնելու նպատակով հորս աշխատանքի էր կանչում:

Կտավհատը նախ բովում էին, հետո աղում էին հսկայական մի քարի տակ, որ կոչվում էր քառակ, հետո անցկացնում էին առաստաղից կախված հսկայական մաղով, ապա ամբողջ կանգվածը լցնում էին քառակատուն և քառակը իրար ետևից լծված մի գոմեշի և մի եզան ուժով պտտեցնում կտավհատի ալյուրի վրա, այն ավելի փափկացնում, հետո կանեփի տափակ կամբյուղների մեջ ածում ու փոխադրում մամլատուն: Զամբյուղներն այնտեղ իրար վրա դարսում էին մամուլի տակ և հսկայական փայտե մամուլը փայտյա պողոսակի (պտուտակի) միջոցով առաստաղից իջեցնում էին կամբյուղների վրա, որոնց ահագին ճնշման տակ ձեթը կամբյուղներից, ինչպես փոքրիկ ջրվեժ, իջնում էր ձիթագուռը: Պողոսակի փայտյա հաստ սկավառակը պտտեցնում էին եզան ուժով կամ չորս-հինգ մարդ՝ բռնակների միջոցով:

Ձիթհանքն աշխատում էր ձմեռվա ամիսներին և կտավհատի տերերը հերթ էին պահում իրենց կտավհատը ձիթհանելու համար:

Ամեն տարի հերթով մի քանի գոմեշ ու եզ կապում էին ձիթհանքի ախոռում: Անասունները քառակն ու պողոսակի սկավառակն էին պտտեցնում և դրա փոխարեն քուսպ էին ուտում, պարարտանում:

Հայրս աշխատում էր մաղի վրա, իսկ ես նստում էի նրա կողքին, կիսախավար անկյունում: Հայրս հերթատերից գաղտնի հաճախ բռներով փոխինձ (բոված կտավհատի ալյուր) էր կոխում գրպանս, և ես ուտում էի անասելի բավականությամբ: Մի մասն էլ բերում էի տուն քույրերիս համար:

Հերթատերերից շատերը մատների արանքով էին նայում դրան: Պատահում էին աչալուրջ ու ժլատ հերթատերեր, որոնք հորս նկատողություն էին անում.

— Քավո՛ր Եղո, լաճուդ ջեբը շատ ես տռզացնում:

Կտավհատի տերերը հսկում էին, որ ձիթհանքի բանվորները և նրանց երեխաները բոված կտավհատ կամ փոխինձ չփախցնեն, ինչպես կալի ժամանակ հսկում են, որ ճնճղուկները չթափվեն ցորենի շեղջի վրա: Հուլեն էլ էր այդ հասկանում և թեթևակի նկատողություն անելուց ավելի հեռուն չէր գնում:

Հուլեի իսկական անունը չեմ հիշում: «Հուլե» մականունն ստացել էր նա, չգիտեմ ժլատությա՞ն, թե՞ շատակերության համար: Ասում էին, որ նա միայնակ կարող է ուտել տասը մարդու բաժին: Հուլեն նույնպես ձիթհանքի վարպետ էր: Նա հաճախ փոխարինում էր Ուստա Կապարին: Կտավհատի հերթատերը պարտավոր էր փլավ տալ ձիթհանքի բոլոր բանվորներին: Փլավը լցնում էին հողե հսկայական մաթրաթի (լվացքի տաշտի մեծության պնակ) մեջ և բոլորում շուրջը: Հուլեն թևը քշտում էր մինչև արմունկ, ձեռքը խրում փլավի մեջ և դուրս քաշում: Եթե նրա ձեռքից յուղը ծորում էր մաթրաթի մեջ, ապա Հուլեն հավանություն էր տալիս փլավին և ուտում առանձնակի ախորժակով, եթե յուղը չէր ծորում, Հուլեն վիրավորվում էր, նախատում հերթատիրոջը և հրաժարվում նրա փլավն ուտելուց: Դա համարվում էր

## ԻՄ ՇՆԻԿԸ

Կորավ մի օր իմ Չալոն՝
Իմ շնիկը խելացի:
Ու տուն չեկավ, որքան ես
Սպասեցի ու լացի:

Հետո տեսա երազում՝
Ման էր գալիս պարտեզում,
Ձեռքով արի, մոտ չեկավ,
Ուրիշի ձեռքն էր լիզում...

Արդյոք ինչո՞վ կոտրեցի
Սրտիկը իմ շնիկի,
Որ խռովեց ինձանից
Ու հեռացավ մեր տանից:

*ՍԱՐԳԻՍ ՄԱՐՈՒՔՅԱՆ*
*(Աշտարակի դպրոց, 7-րդ դաս.)*

digitised by A.R.A.R.@

մեծ անպատվություն: Խառակոնիսցիք իրար բարև տալուց առաջ կարող էին ասել.

— Հուլեն ռես Հարոյի փլավը չի կերել:

Ես շատ էի սիրում ձիթհանքը: Դպրոց գնալուց առաջ ամբողջ օրը, իսկ դպրոց գնալուց հետո ամբողջ երեկոն, անց էի կացնում այնտեղ: Ոչ միայն նրա համար, որ հայրս ինձ բոված կտավհատ կամ փոխինձ էր ուտեցնում: Ես այնտեղ ստանում էի նաև հոգեկան բավականություն: Ինձ երբեմն թույլ էին տալիս քառակի եզը քշել կամ պողոսակի սկավառակը պտտեցնել: Անասելի հրճվանքով էի նայում, թե ինչպես է ձեթը կամբյուղների միջից կլկլալով թափվում գուռը:

Ինձ համար իսկական տոնախմբություն էր մանավանդ փոխինձի վերջին քառակումը: Ամբողջ փոխինձը լցնում էին քառակատուն, քառակին լծվում էր մի ուժեղ գոմեշ, իսկ առաջից՝ մի ուժեղ եզ: Քառակը հանդիսավոր ճռռոցով պտտվում էր փոխինձի մուգ շիկավուն պանգվածի մեջ, Ուստա Կակոն հանդիսավոր քայլվածքով գնում էր գոմեշի ետևից ու երգում:

Ուստա Կակարը ոչ միայն ձիթհանքի նշանավոր վարպետ էր, այլև հայտնի հեքիաթասաց և երգերի հմուտ կատարող: Ուներ խորքից եկող հանդիսավոր ու հեղինակավոր ձայն: Հետագայում ես նրա նմանությամբ երգում էի և ունկնդիրներին ծիծաղից թուլացնում: Ես պարծենում էի, որ Ուստա Կակարը հորս հորեղբայրն է:

Ճիշտը խոստովանած՝ ես մինչև վերջն էլ չկարողացա պարզել մեր և Ուստա Կակարի ազգակցության բնույթը: Հայրս Ուստա Կակարենց և նրա եղբայր Խլոյին անվանում էր հորղպերներ: Ես էլ էի նրանց հորղպեր կոչում: Բայց մեր ընտանիքներն իրար հետ ազգակցական որևէ մտերմություն չունեին: Նրանք հողատեր էին և ունևոր, մենք հողազուրկ էինք և աղքատ:

Ձիթհանքում կատարած իր աշխատանքի համար հայրս ձեթ էր ստանում՝ քաղցր կամ դառնահամ ձեթ: Նայած ով ինչպիսի կտավհատ էր բերում ձիթհանք: Ոմանց կտավհատին խառն էր լինում խարդալ կոչվող սևահատիկը, որի պատճառով ստացվում էր դառը ձեթ: Մեր գյուղում քաղցր ձեթը գործածում էին կերակրի մեջ, իսկ դառը ձեթով գոմեշներ էին օծում: Դա փափկեցնում էր նրանց մորթը, ոչնչացնում էր գոմեշի վրա բույն դրած միջատներին, որից հետո անասունը կայտառանում էր և դառնում ավելի աշխատունակ:

Հայրս տուն էր բերում ձեթի երկու տեսակից էլ: Բայց գոմեշ ունեցողները հաճույքով մեր դառնահամ ձեթը փոխանակում էին քաղցրի հետ:

(Շարունակելի)

Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ



digitised by A.R.A.R.@

# ԱՍՏՂԸ



ՎԻԼՅԱՄ ՍԱՐՈՅԱՆ

Նկ. ՍԱՐՈ ԿԱԼԵՆՑԻ

Հայրս և ես նստեցինք մեր «Ֆորդ» ավտոմեքենան և սկսեցինք ճանապարհորդել:

Հայրս ավտոմեքենան վարում էր ժամում հիսուն մղոն արագությամբ: Ապա հետզհետե ավելացրեց արագությունը և հասցրեց վաթսունի, յոթանասունի: Մեքենան սկսեց շաչել, աղմկել, հռնդյուններ արձակել, և հայրս ստիպվեց արագությունը իջեցնել վաթսունի: Մենք քշեցինք անցանք շատ քաղաքների մոտով և հասանք մի վայր, որտեղ հնդկացիները երեք թե չորս հարյուր տարի առաջ թափել էին իրենց աղբը:

Հայրս պատմեց, որ մի օր այնտեղ հանդիպել էր հնագետների մի խմբի, որը բաղկացած էր դասախոսից և ուսանողներից: Դասախոսը ջահել էր, գրեթե իր ուսանողների տարիքի: Նա ասել էր, որ արդեն վեց ամիս է, ինչ շաբաթ օրերը պեղում են այդ վայրը և արդեն շատ բան են սովորել ուշադիր պեղելու մեթոդների մասին, բայց առանձնապես ոչ մի ուշագրավ բան չեն գտել: Չնայած դրան՝ արժեր պեղել: Նա հորս ցույց էր տվել ծխնականջի մի խեցի, որը երեք հարյուր տարվա հնություն ուներ: Դա շատ նման էր ծխնականջի այն խեցիներին, որ այժմ էլ կարելի է գտնել ծովափին: Հիանալի էր:

Մենք մոտեցանք մի ուրիշ փոքրիկ քաղաքի, և երկնքում, ծովի վերևում ես տեսա մի աստղ, միայն մի աստղ, հեռու-հեռվում, բոլորովին միայնակ:

Հայրս ինձ բացատրեց, թե ինչպես պետք է սնվենք մեր այս ճամփորդության ընթացքում:

— Հենց որ քաղց զգաս,— ասաց նա,— խավաքարտե տուփի միջից մի բան վերցրու և կեր, կամ եթե տաք բան ես ուզում ուտել, ինձ զգուշացրու, որպեսզի ավտոմեքենան կանգնեցնեմ մի տեղ և մի տաք բան ճարեմ:

— Շատ լավ,— ասացի ես,— բայց դեռևս քաղցած չեմ, իսկ երբ քաղց զգամ, կարծում եմ, որ ուտելու շատ բան կա խավաքարտե տուփի մեջ: Մենք չպետք է փող ծախսենք, եթե դրա անհրաժեշտությունը չկա:

— Այդ ճիշտ է,— հաստատեց հայրս,— մենք կաթ էլ ունենք, այնպես որ այս գիշեր դու կաթ կխմես:

— Հայրի՛կ,— ասացի ես,— այդ տուփի մեջ մենք շատ բան ունենք ուտելու:

— Հիմա պետք է լուծենք քնելու հարցը,— առաջարկեց հայրս:

— Խնդրեմ, լուծենք,— ասացի ես:

— Ես որոշել եմ ամբողջ գիշերը քշել մեքենան, բայց, իհարկե, այդ չի նշանակում, որ դու էլ ամբողջ գիշերը արթուն պիտի մնաս: Դու պետք է պառկես ետևի նստարանի վրա, փաթաթվես զինվորական վերմակների մեջ և քնես,— ասաց հայրս:

— Ես այդ կանեմ,— խոստացա ես,— բայց ոչ հիմա: Մենք դեռևս նոր ենք ճամփա ելել:

— Շատ լավ:

— Ե՞րբ ենք տեղ հասնելու:

— Տասը ժամվա ճանապարհ է: Հիմա ժամը մոտավորապես յոթն է: Մեկ ժամ կկորցնենք կանգառներում, ասել է թե առավոտվա ժամը հինգին տեղ կհասնենք: Դա լուսաբացից մեկ ժամ շուտ է: Կարծում եմ, որ քեզ համար հաճելի կլինի այգաբացը այնտեղ դիմավորել:

— Հավատացած եմ, որ այո: Հետո ի՞նչ ենք անելու:

— Ես մտածում եմ քշել հասնել Սան-Ֆրանցիսկոյում գտնվող իմ հին տունը:

— Ինչպե՞ս է, որ դու այդտեղ չես ապրում հիմա:

— Այլևս այնտեղ ես ինձ տանը չեմ զգում:

— Ինչո՞ւ:

— Երևի ես այլևս Սան-Ֆրանցիսկոն չեմ սիրում, իսկ միտք չունի, որ գրողը ապրի մի քաղաքում, որը չի սիրում:

— Իսկ եթե գրողը ամբողջ աշխարհում ոչ մի քաղաք չի սիրում, ապա ի՞նչ է անելու:

— Նշանակում է նրա գործերը վատ են:

— Ինչո՞ւ:

— Գրողը պետք է սիրահարված լինի աշխարհին, այլապես չի կարող գրել:

— Ինչո՞ւ չի կարող:

— Որովհետև ամեն լավ բան ծնվում է սիրուց: Եթե գրողը սիրահարված է աշխարհին, նշանակում է սիրում է յուրաքանչյուր մարդու, և հետևաբար կարող է գրել:

Ես նայեցի հեռու երկնքում փայլփլող աստղին:

— Ես սիրո՞ւմ եմ աշխարհը:

— Անշուշտ:

## ՀԱՑ

Երբ տեղ հասանք, առավոտ էր: Ինչպես ծրագրել էինք, սկսեցինք ման գալ քաղաքում: Դա ըն-

digitised by A.R.A.R.@




դամենը մի փոքրիկ քաղաք էր, որտեղ մարդիկ էին ապրում:

Քայլելիս հայրս երգում էր: Շուտով նա դադարեցրեց երգը և սկսեց խորը շնչել:

— Մոտակայքում մեկը հաց է թխում,— ասաց նա,— թարմ հաց ուտել չե՞ս ուզում:

— Ուզում եմ:

Մենք քայլեցինք մինչև փողոցի անկյունը, ապա շուռ եկանք դեպի մյուս փողոցը, բայց փուռը չգտանք: Վերադարձանք մեր նախկին տեղը և ահա, քիչ հեռու, մենք գտանք փուռը, բայց դուռը կողպած էր:

Հայրս դուռը թակեց և հայտնըվեց փռապանի սպիտակ արտահագուստով, ձեռքերն ու դեմքը ալյուրոտ մի մարդ, որը մոտեցավ ու բացեց դուռը:

— Մենք փուռը բացում ենք ժամը յոթին, իսկ հիմա դեռ վեցը չկա:

— Ի՞նչ եք թխում այդտեղ,— հարցրեց հայրս:

— Հաց և գլորիկ:

— Հնարավոր չէ՞ արդյոք մի քիչ հաց գնել: Հաճախ չէ, որ մենք թարմ հաց ուտելու առիթ ենք ունենում:

— Խնդրեմ, նե՛րս համեցեք,— ասաց հացթուխը, և մենք՝ հայրս և ես, ներս գնացինք: Մարդը մեզ առաջնորդեց այն սենյակը, որտեղ ինքը և կինը հաց էին թխում: Շատ մաքուր և հաճելիորեն տաք էր այնտեղ:

— Վերցրեք կերե՛ք,— ասաց հացթուխը:

Հացթուխի կինը փայտյա թիակով փռից դուրս հանեց վեց հատ ֆրանսիական բուլկի և երկարեց հորս: Հայրս մեկ հատ բուլկի վերցրեց, ապա վերցրեց նույն ձևով փռից դուրս բերված վեց հատ գլորիկ: Նա մի հատ տվեց ինձ, մի հատ էլ սկսեց ինքն ուտել: Բուլկին դրեց իր գրպանը:

— Նստեցեք,— առաջարկեց հացթուխը:— Այնտեղ, այդ փոքրիկ սեղանի վրա պանիր էլ կա, վերցրեք կերե՛ք, խնդրում եմ:

Հայրս և ես մոտեցանք փոքրիկ սեղանին և նստեցինք նրա շուրջը:

— Ճանաչո՞ւմ ես այդ հացթուխին, հայրի՛կ,— հարցրեցի ես:

— Առաջին անգամ եմ տեսնում:

Հացթուխը մոտեցավ, ճեղքեց բացեց մի գլորիկ, մեջը պանիր դրեց: Կարծեցի, թե ինքն է ուտելու, բայց նա այն մեկնեց ինձ և ասաց.

— Հիշի՛ր, միշտ հաց ու պանի՛ր կեր և դու առողջ կլինես:

— Շատ լավ, պարո՛ն:

— Ահա, թե ինչու հացթուխ դարձա,— ասաց նա:— Փորձեցի շատ ուրիշ արհեստներ, բայց համոզվեցի, որ այս գործը ինձ համար լավագույնն է:

Հացթուխը մի ուրիշ գլորիկ էլ կտրեց, մեջը պանիր դրեց և տվեց իր կնոջը, որը հենց նոր էր մոտեցել մեզ և ժպտում էր, որովհետև վերջացրել էր հաց թխելը:

— Դուք ո՞րտեղից եք,— հարցրեց մեզ հացթուխի կինը:

— Ճիշտն ասած՝ մենք Սան-Ֆրանցիսկոյից ենք,— ասաց հայրս,— թեև վերջին մի քանի տարին ապրում ենք Մալիբու քաղաքում:

— Ի՞նչ գործ եք անում,— հարցրեց կինը:

— Ես գրող եմ,— ասաց հայրս:

— Գրքե՞ր եք գրում:

— Այո՛, գրքե՛ր:

— Ի՛մ մասին էլ մի գիրք գրիր,— ասաց կինը և սկսեց ծիծաղել:— Ես ձեզ այնպիսի՜ բաներ կարող եմ պատմել... Աշխատում ենք, աշխատում, աշխատում և ամբողջ ժամանակ ծիծաղում: Չարչարվում ենք, չարչարվում, չարչարվում և ամբողջ ժամանակ ծիծաղում: Ի՞նչ եք կարծում, մենք քանի՞ երեխա ունենք:

— Երեք,— ասաց հայրս:

— Յոթ,— ասաց կինը:— Եվ բոլորն էլ արդեն մեծացել են: Իմ ամուսինը քառասունչորս տարեկան է, ես՝ քառասուներկու: Մեր ամենափոքր երեխան տասնութ տարեկան է, նա ծառայում է նավատորմում: Հը՞, ինչպե՞ս է:

— Հիանալի է,— ասաց հայրս:

— Հիմա մենք մենակ ենք և գնել ենք այս փուռը: Ի՞նչ կյանք է մերը, ի՜նչ կյանք: Գի՛րք գրեք իմ մասին: Ես ձեզ այնպիսի՜ բաներ կարող եմ պատմել:

— Պատմեցե՛ք,— ասաց հայրս:

— Երկար պատմություն է,— ասաց հացթուխը,— մեր գլխի բոլոր եկածները պատմելը կնոջիցս մեկ ժամ կխլի:

Հացթուխը և իր կինը նստեցին և պատմեցին, և ես լսեցի, մինչև որ ժամը յոթը եղավ:

Հացթուխը բացեց դրսի դուռը, և մարդիկ սկսեցին գալ ու հաց գնել:

Հայրս ու ես հրաժեշտ տվեցինք և դուրս եկանք փողոց:

Բայց եթե այդտեղի բնակիչ չես, պարզ է, որ չես կարող միշտ այդ փոքրիկ քաղաքում մնալ: Ուստի երբ քաղաքը կարթնեց, մենք նստեցինք մեր փոքրիկ ավտոմեքենան և սկսեցինք քշել դեպի ավելի հյուսիս, դեպի Սան-Ֆրանցիսկո:

Անգլ. թարգմ. ՇԱՔԷ ՎԱՐՍՅԱՆԻ

digitised by A.R.A.R.@

ԴԵՊԻ ՊԻՈՆԵՐԻԱՅԻ
50-ԱՄՅԱԿԸ



## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՊԻՈՆԵՐԻԱՅԻ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ԷՋԵՐԻՑ

Ա. ԱԴՈՅԱՆ

# ՄԵՐ ՍԻՐԵԼԻ ԱՐՏՈՆ



Քառասունութ տարի է անցել այն օրից, ինչ մենք ճանաչեցինք ու սիրեցինք Հայաստանի պատանի կոմունարների՝ այն ժամանակվա պիոներ-կազմակերպության ճանաչված հիմնադիրներից՝ Արտավազդ Բզնունուն:

Արտաքուստ նա առաջին հայացքից սովորական մարդ էր: Ստեփան Մանուկյանի պես թիկնեղ, հույժ առնական և հերկուլեսյան կեցվածք չուներ: Սակայն ջլուտ էր, ուներ մարզված մարմին, միշտ հաստատուն էր քայլում: Բնավորությամբ իրոք հեզաբարո Արտոն պիոներ-գործիչների շրջանում վայելում էր անկեղծ սեր ու բուռն համակրանք: Բոլորովին զերծ լինելով ցուցամոլությունից, նա միշտ ուսուցանում էր պիոներ-հրահանգիչներին հատուկ ուշադրություն դարձնել պատանիների ֆիզիկական գեղեցկությանն ու մարզվածությանը, նրանց վարք ու բարքին և համազգեստին:

Հիշում եմ մի այսպիսի դեպք:

1922—23թ.թ. պատանի կոմունարների կոլեկտիվներին կից գործում էին նախապիոներական հասակի մանուկների (հոկտեմբերիկներ) ծաղկոցներ:

— Առավոտյան ժամը 7-ին կլինեք Կոմունարների այգում,—ասաց նա ինձ:

Հաջորդ օրը նշված ժամին ես այնտեղ էի, ուր լինելու էր ծաղիկների ամենամեծ կոլեկտիվի հերթական մարմնամարզական պարապմունքը: Ծաղկոցապետը՝ մեր հարգված հրահանգիչներից մեկը, պատվի բռնած դիմավորեց կենտրոնական շտաբի պետ Արտո Բզնունուն: Ժամը 7-ի փոխարեն, պարապմունքն սկըսվեց 7 անց 20 րոպեին. ներկա էին 16 ծաղիկներ, բացակա՝ 34:

— Թույլ տվեք սկսել պարապմունքը, — պատվի առած ասաց հրահանգիչը՝ դիմելով ընկեր Արտոյին:

— Իսկ ու՞ր են մնացածները,—կարծեցյալ անտարբերությամբ հարցրեց նա:—Ծաղիկները մի՞շտ են այսպես ուշանում: Ինչո՞ւ մեզ իրազեկ չեք պահել այս վիճակի մասին: Դուք ձեր զեկույցներում ամեն ինչ լավ եք ներկայացնում ձեր ղեկավարած ծաղկոցում... Սկսե՛ք,—կտրուկ հրամայեց շտաբի պետը:

Այգու վաղորդյան լռությունը խզվեց հրահանգչի ականջ ծակող սուլիչի ձայնով:

Մինչ հրահանգիչն իր պարապմունքն էր վարում չարաճճի ծաղիկների հետ, ներքուստ սաստիկ դժգոհ Արտոն «հանդարտ» ճեմում էր Կոմունարների այգու սաղարթախիտ ծառուղիներում: Ծաղիկների քառասուն րոպե տևող պարապմունքի ընթացքում նա լուռ էր, բայց խռովահույզ: Ինքնահավան հրահանգչի թե՛ բամբ ձայնը, թե՛ սուլիչային ազդանշանները չէին կարողանում լռեցնել փոքրիկներին:

Մյուս օրը պատկոմների Երևանի շտաբի նիստում Արտոն հանգամանալի խոսեց հիշյալ ծաղկոցի անհանդուրժելի վիճակի մասին:

Նոր հրահանգիչ նշանակվեց, և երկու շաբաթ անց ծաղկոցը նոր կյանք առավ:

Այժմ, երբ հրատարակության ենք պատրաստում Արտավազդ Բզնունու գրական համեստ ժառանգությունը, նրա օրագրերից մեկում կարդում ենք.

«18 մայիսի, 1923 թ., Երևան:

1. Պատկոմական հրահանգիչը չպետք է խորհի, թե պատկոմները ոչինչ չգիտեն այն նյութի վերա-



digitised by A.R.A.R.@

բերյալ, որի մասին ինքը զրուցում է նրանց հետ: Նա չպետք է մոռանա, որ իր ունկնդիրները ծնողներից, դպրոցից և մանավանդ ընկերներից որոշ գիտելիքներ են ամբարել կյանքի իրադարձությունների և երևույթների վերաբերյալ: Այդ գիտելիքները ավելանում են նրանց տարիքի համեմատ: Ուստի, նրանք մեր հլու և խոնարհ ունկնդիրները չեն, այլ փոքրիկ և հաճախ խելոք քննադատները: Ուրեմն, խելոք կոլվարը մշտապես սովորեցնելով, ինքն էլ շատ բան է սովորում: Ով չի կարող յուրացնել այս ճշմարտությունը, չի կարող պատկոմական աշխատող լինել:

2. Չմոռանաք, որ դուք կարող եք պատանիների վրա ներգործել ոչ այնքան գեղեցիկ խոսքով, որքան ձեր անձնական օրինակով, վարքագծով և նույնիսկ արտաքին կեցվածքով: Մանուկները զգայուն են և ընդօրինակող, մշտապես ընկալում են ձեր շարժումները, դիմախաղն ու խոսելակերպը: Եղեք զգույշ, որ նրանց հոգում ձեր պատկերի արտացոլումը խեղաթյուրված չլինի: Երբ ձեր փողկապն անփույթ եք կապել, մազերն անխնամ եք սանրել և գոռում եք անհարկի՝ ձեր հրամանները կմնան ապարդյուն և կզրկվեք հեղինակությունից: Իսկ առանց հեղինակության և անկեղծ համակրանքի, մանկավարժը չորացած ծառ է կանաչ անտառում:

3. Եթե ուզում եք պատկոմները ձեզ ենթարկվեն, հարգեն ու սիրեն, բարեհաճեք նրանց միշտ հանդիպել շոյող ժպիտով, զվարթ ծիծաղով, որպես նրանց տարեց ընկեր: Այո, դուք մանուկների վրա կկարողանաք մեծ ազդեցություն ունենալ, եթե մշտապես լինեք խելոք մանուկի դերում, նրանց հետ վազեք, ցատկեք, պարեք, հրճվեք, տխրեք, գերեք նրանց ձեր անձնական հմայքով, բայց ոչ թե միայն հրամայեք: Գերզգուշություն է պետք: Փոքրիկ քաղաքացիների ինքնասիրությանը չդիպչեք, նրանց քրքիջներին դիմադրեք մեղմ հումորով և իմաստալի կատակով: Այլ կերպ, նրանց խայթող հակակրանքին կարժանանաք: Անհարկու հրամաններով պատանու մտքին չես իշխի:

4. Պատկոմական կոլվարն ըստ էության ավագ ընկերն է պատկոմների և ոչ թե վարչական իրավունքներով օժտված «հրահանգիչ»: Մեր գործունեության մեջ հարկադրանքի մեթոդը բացառվում է: Մենք համակրանքի և հեղինակության ուժով ենք գործում: Վախի վրա հիմնված կարգապահությունը հակամանկավարժական է: Հեշտ է ասել՝ գիտակցական կարգապահություն պատանեկան աշխարհում, բայց շատ դժվար է գտնել դրա կիրառման եղանակն ու մեթոդները:

5. Պատկոմական գործչին անհրաժեշտ է մի հատկություն ևս. լինել համբերատար, առանց որի կհաղթի մանկական անարխիան: Բայց սրա հետ մեկտեղ հրահանգիչը պետք է ունենա ուժեղ կամք ու վարվեցողության տակտ: Վերջինս շատ է պակասում մեր հրահանգիչներին: Հեղհեղուկ, անկամ և անհրապույր երիտասարդը լավ հրահանգիչ չի լինի: Գիտելիքներից, խելքից բացի, պատկոմ-հրահանգիչը պետք է զգացմունքներով հարուստ լինի: Սա այն կամուրջն է, որով դեպի մեզ կգան բոլոր պատանիները և...»

Այստեղ ընդհատվում է մեր սիրելի պատկոմապետի՝ Արտավազդ Բզնունու ձեռագիրը:

Արտավազդ Բզնունու ղեկավարությամբ դաստիարակված սերունդը իր ավանդն է մուծել սոցիալիզմի կառուցման մեծ գործում՝ մի ամբողջ սերնդի կոմունիստական դաստիարակությամբ:

*ԱՐԱՐԱՏ ԱՅՎԱԶՅԱՆ*

# ՊԱՏԱՆԻ ԱՌԱՔԵԼԸ

Ծնվել է նա պարսկական
Մի գյուղակում խուլ,
Խրճիթի մեջ գեղջկական՝
Աղքատ ու խարխուլ:
Ուրախացել է նրա
Պապը ծերունի.
— Լա՜վ է, ծնվել է տղա,
Մշակ կլինի:
Բայց պապը ի՞նչ իմանար,
Որ թոռը ժպտուն,

Կյանքում պիտի ունենա
Հայրենական տուն:
Թողած հեռու մշուշում
Գյուղը պարսկական՝
Շատերի հետ իրենք էլ
Հայրենիք կգան:
Ու նա դպրոց կգնա՝
Շրթունքին երգեր,
Կարմիր վզկապ կունենա
Ու դասագրքեր:

digitised by A.R.A.R.@



ԳՈՀԱՐ ՄԱՆՈՒԿՅԱՆ

# ՏԱԹԵՎԻ ՈՂԲԵՐԳՈՒԹՅՈՒՆԸ

Գործ՝ ԷԴՎԱՐԴ ԻՍԱԲԵԿՅԱՆԻ

1921 թվականի մարտյան ցրտաշունչ մի օր Երևանի կենտրոնական բանտում իրարանցում էր: Ձերբակալված կոմունիստները նախօրոք գիտեին բոլշևիկների հաջողությունները և օր-օրի սպասում էին նրանց գալուն: Բայց կատարվեց անսպասելին. բանտի դռները բաց արին դաշնակցականները: Զինված պահակախումբը ձերբակալվածներին դուրս բերեց բանտախցիկներից:

Ամեն ինչ պարզ դարձավ. պարտված թշնամին փախչում էր և հետը տանում հայ ժողովրդի անվեհեր մարտիկներին: Վաթսուներեք հոգի էին նրանք: Դաշնակցականները տանում էին նրանց դեպի Բաշ-Գյառնի, Զանգեզուր: Նրանք որոշել էին սպանել հեղափոխականներին, բայց ո՛չ սպանությունների իրենց սովորական եղանակով: Տանում էին նրանց սոված, ծարավ, առանց տաք հագուստի, իսկ հիվանդներին և ետ մնացողներին սպանում էին տեղնուտեղը:

Հեղափոխականները գիտեին, որ դաշնակցականները դեպի մահ են առաջնորդում իրենց, բայց գնում էին աներեր, հայացքները հեռուն, վստահ իրենց գործի մոտալուտ հաղթանակի նկատմամբ:

Ականատեսներից մեկը գրում է. «Ծարավն ու ծանակը այն աստիճան էր, որ եթե բանտարկյալներից մեկնումեկը, ծարավից տանջված, ցանկանում էր գետնից քիչ ձյուն վերցնել, թույլ չէին տալիս, և որպես հրամանները չկատարողի՝ թակում էին հրացանի կոթով»: Նրանց մի մասին դաշնակցականները ժայռից ցած գլորեցին Բաշ-Գյառնիի մոտ, իսկ Հայաստանի կոմերիտմիության Կենտկոմի քարտուղար Արմենակ Բուդաղյանին ավինահար արին:

Ճանապարհին նորանոր ձերբակալվածների էին բերում: Քեշիշքենդում նրանց հանձնում են դաշնակցական, այսպես կոչված, արտակարգ հանձնաժողովին: Ականատեսներից մեկը պատմում է, որ հարցաքննության ժամանակ ազգանունների դի-

# ԲՆՈՒԹՅԱՆ ԲԱՐԵԿԱՄՆԵՐԸ

*Ընդամենը յոթ տարի առաջ, սեպտեմբերի 1-ին, Երևանի № 102 միջնակարգ դպրոցում առաջին անգամ հնչեց զանգը: Նորակառույց դպրոցը հարմարավետ էր, ընդարձակ դասասենյակներով, օրվա բոլոր ժամերին արևոտ ու լուսավոր: Ժամանակակից ոճով կառուցված ապակեպատ շենքում ինչ-որ բան սակայն պակասում էր: Ով էլ որ այդ չզգար, Գոհար Հակոբջանյանի աչքից այդ չէր կարող վրիպել: Վաստակաշատ ուսուցչուհին շատ վաղուց էր՝ սկսել իր աշխատանքային կենսագրությունը և ուր էլ գնացել էր, եղել էր ծառի ու ծաղկի բարեկամ: Շուտով դպրոցում գործել սկսեց պատանի բնասերների խմբակը և... նոր հրապույր ստացավ դպրոցի շենքը: Ամենուրեք ծաղիկները աչք են շոյում՝ ընդարձակ միջանցքներում, դասասենյակներում: Իսկ կենսաբանական լաբորատորիայում, բացի փարթամ ծաղիկներից և հանրապետությունում հանդիպող հազվագյուտ բույսերից, ինչպիսիք են ծաուշուշանն ու կակտուսների մի քանի տեսակները, կարող եք հանդիպել բազմաթիվ հերբարիումների, համապատասխան լուծույթով լի սրվակների մեջ*



digitised by A.R.A.R.@

մաց դրվում էին մեկ, երկու, երեք և այլ խաչեր: Ծածկագրի գաղտնիքը շուտով հայտնի է դառնում.

«...ում մեկ խաչ էր՝ նրան պետք է գնդակահարեին մեկ օրից հետո, ում երկու խաչ՝ երկու օրից հետո, և այլն»:

Փրկվածներից մեկը գրում է. «Գնդնագի բարձր քարափի գլխին դահիճները մեր ընկերներին ստիպեցին «աերոպլան» դառնալ: Ընկերներին մոտեցնում էին անդնդի եզրին և հրամայում ցած թռչել:

Տատանվողներին ոտքով հրում էին և Բազարչայի ալիքները ընդունում էին նրանց ջախջախված դիակները»:

Ձերբակալվածների մի մասին ցած են գլորում Գնդնագի բարձր ժայռից, իսկ մյուսներին՝ 104 հոգի, տանում են դեպի Տաթև, ենթարկելով անասելի խոշտանգումների ու տանջանքների, ցած են գլորում Տաթևի ժայռից:

Երախտագիտությամբ վերհիշելով իր զավակներին, որոնք իրենց կյանքը զոհել են հանուն մարդկության լավագույն ապագայի, հայ ժողովուրդը մի շարք վայրերում հուշարձաններ է կանգնեցրել ի պատիվ նրանց:

Գնդնագի մոտ, Արփա գետի ափին, ժայռի մեջ կառուցված հուշարձանի վրա գրված է.

«Դաշնակ ճիվաղների ձեռքով 1921 թվականին այս ժայռից ներքև նետված կոմունարների հիշատակին, որոնք ընկան հանուն սովետական իշխանության հաստատման»:

Տաթևի ողբերգությանն է նվիրված Է. Իսաբեկյանի «104-ի գնդակահարությունը» կոմպոզիցիոն նկարը, որը գտնվում է Հայաստանի հեղափոխության թանգարանի սրահներից մեկում: Զոհված հերոսների անուններով հանրապետությունում կան շատ դպրոցներ ու պիոներական դրուժինաներ:

ՊԱՐՈՒՅՐ ՍԵՎԱԿ

# ՄԱՆՈՒՇԱԿԸ

Մանուշակը մի ժամանակ,
Ինչքան առաջ՝ ի՞նչ իմանաք,
Եղել է մի շատ գեղեցիկ,
Մի շատ քնքուշ,
Անուշ աղջիկ:
Բայց եղել է շատ բացբերան.
Սրա խոսքը տարել նրան,
Նրա խոսքը բերել սրան,
Ինչքան գաղտնիք են վստահել,
Ոչ մի գաղտնիք նա չի պահել:

Խրատել է մայրը նրան,
Իսկ նա՝ էլի միշտ բացբերան,
Խրատել է մայրը մեկ էլ,
Իսկ նա գլուխ չի էլ թեքել:
Միշտ խելքի է մայրը գցել,
Իսկ նա լեզուն չի էլ կծել:
Երբ տեսել է՝ օգուտ չկա,
Անիծել է մայրն աղջկան.
-- Դաշտերն ընկած՝
Ապրես ծնկած,
Հենց կորանաս՝
Շուտ չորանաս,
Ու լեզուդ էլ
Բաց բերնիցդ թող դուրս չգա,
Այլ՝ բկիցդ,
Ծոծրակիցդ:—
Դրա համար
Մինչև հիմա
Մանուշակը ցողուն տալիս,
Դեռ նոր ցցված,
Դեռ նոր բացված՝
Թառամում է,
Իսկ ծաղիկն էլ դուրս է գալիս
Ո՛չ թե բերնից,
Այլ բկից
Եվ մինչևիսկ ծոծրակից...

պահվող կենդանիների: Պատանի բնասերներ Շամիր Գասպարյանը, Արամ Աղայանը, Համիկ Եթիմյանը, Մարիամ Մանուկյանը հաճախ են էքսկուրսիա գնում իրենց հինամյա, բայց երբեք չհոգնող ուսուցչուհու հետ և երբեք դատարկաձեռն չեն վերադառնում: Մեծ սիրով են նրանք խնամում արծվի ձագին, որ Մանվելն է որսացել, Արամ Աղայանի բռնած ոզնուն: Պատանի բնասերներին օգնում են ծնողները, Երևանի բուսաբանական այգին: Խմբակը բազմիցս արժանացել է պատվոգրերի, մրցանակների, իսկ 1969 թվականին, ծաղկի տոնին, պատանի բնասերները ցուցադրեցին ճիշտ իրենց դպրոցի համարին համապատասխանող ծաղկատեսակներ՝ 102 հատ և գրավեցին առաջին տեղը: Դրսում արևկեզ ամառ լինի թե ցուրտ ձմեռ, մայրաքաղաքի № 102 միջնակարգ դպրոցից ձեզ կժպտան փարթամ, բազմագույն ծաղիկներ:

ՎԱՀԱՆ ՄԵԽԱԿՅԱՆ

383-71



ԱԼԲԵՐՏ ՓԱՐՍԱԴԱՆՅԱՆ

# ՍԱՀՄԱՆԻ ՄՈՏ



Իշխան Մերոբյանը և Վալերիկ Սարգսյանը

Այծիները փռված էին գյուղից դուրս, սահմանից ոչ հեռու: Երևում էին ծանծաղ գետը, սահմանային նշանները, իսկ ավելի հեռվում, սահմանից այն կողմ՝ թուրքական մի գյուղ: Տղաները նստել էին գետափին, զրուցում էին:

Գարնանային լավ օր էր: Մեղմ ծփանքով ալեկոծվում էին ծաղիկներն ու մինչև ծնկները հասնող կանաչ խոտը: Վալերիկի հայրը շտապ գործով քաղաք էր մեկնել և խնդրել էր տղաներին հսկել ոչխարի հոտը, մինչև վերադառնա:

— Իշխա՛ն, նայի՛ր,— հանկարծ Վալերիկը հպվեց ընկերոջը,— ո՞վ է:

Հեռվում փոքրիկ բլուրի մոտ երևում էր մի մարդ: Անտարբեր շուրջը դիտելով՝ նա քայլում էր դեպի գյուղը:

— Մեր գյուղից չի,— ասաց Իշխանը:

— Չէ, մերոնցից չի:

Անծանոթը ճանապարհը թողած՝ քայլում էր բլուրների միջով: Ահա հանկարծ թեքեց ճանապարհը: Նա միայս բարակ սպիտակ վերնաշապիկ էր հագել, մինչդեռ եղանակը պաղ էր և գյուղացիները դեռ տաք հագուստով էին:

Վալերիկն ուզեց վեր թռչել, Իշխանը չթողեց.

— Սպասի՛ր:

Հոտին հսկող գամփռը՝ Ասլանը ևս անհանգիստ շարժումներ էր անում, բայց և այնպես սպասում էր տղաների հրամանին:

Անծանոթը արդեն բավական մոտեցել էր: Զգացվում էր, որ նա մտադրություն չունի գյուղ մտնելու: Տղաները դանդաղ ոտքի ելան:

— Եթե պետք լինի, ես կզբաղեցնեմ նրան, իսկ դու կվազես ուղեկալ:

— Լավ...

Տղաները արագորեն շրջանցեցին բլուրը և ընդառաջ եկան անծանոթին: Վերջինս կարծես ուզեց խույս տալ հանդիպումից, բայց հետո սիրալիր ողջունեց.

— Բարի լո՛ւյս, ջահելնե՛ր:

— Բարև՛ ձեզ,— պատասխանեցին տղաները:

— Առավոտ վաղ ի՞նչ եք անում այս կողմերում,— հարցրեց անծանոթը,— ինչո՞ւ դպրոցում չեք:

— Արձակուրդ է,— իսկույն հնարեց Իշխանը:

— Ահա թե ինչ, դրա համար էլ որոշել եք վայելել թարմ օդում, լավ է, շատ լավ է: Դե՛, մնաք բարո՛վ:

Վալերիկը զգաց, որ անծանոթը ուզում է արագ հեռանալ: Անծանոթը Իշխանի ասածին չառարկեց, նշանակում է, չգիտի, որ հիմա դպրոցական արձակուրդների ժամանակը չի: Մայիսի սկզբին ի՞նչ արձակուրդ:

Իշխանը կտրեց անծանոթի ճանապարհը: Վալերիկը կանգնեց ընկերոջ կողքին:

— Տվե՛ք ձեր անձնագիրը:

— Օհո՜, փոքրի՛կ սահմանապահներ, չլինի՞ թե կասկածում եք,— ասաց անծանոթը և շարունակեց քայլել:

— Տվե՛ք ձեր անձնագիրը,— համառորեն պահանջեց Իշխանը:

Անծանոթը ձեռքը գրպանը տարավ, բայց անձնագրի փոխարեն երկու թղթադրամ հանեց:

— Գիտե՞ք, տղանե՛ր, ես մոտ գյուղում եմ ապրում, ինձ բոլորը ճանաչում են, դրա համար էլ սովորաբար անձնագիր չեմ վերցնում: Իսկ այս դրամը պահեք, գրքեր կգնեք:

— Դրամը ձե՛զ պահեք,— խիստ տոնով ասաց Իշխանը,— ոչ մի տեղ չեք գնա, մինչև ուղեկալից մարդ չգա: Վալերի՛կ, վազի՛ր...

Վալերիկը իսկույն պոկվեց տեղից: Փոսերի վրայով թռչելով, բլուրները շրջանցելով, նա վազում էր դեպի ուղեկալ: Մի միտք սակայն հանգիստ չէր տալիս նրան, իսկ Իշխա՞նը... Ճի՞շտ վարվեց՝ նրան մենակ թողնելով: Հանկարծ անծանոթը չվնասի՞ նրան: Վալերիկը մեկ մտածեց ետ գնալ՝ օգնության հասնել ընկերոջը, հետո հիշեց Ասլանին ու նորից սլացավ դեպի ուղեկալ:

Իշխանն ու անծանոթը կանգնել էին դեմառդեմ:

— Լսի՛ր, տղա՛,— մարդը մի քայլ արեց դեպի պատանին,— վերցրո՛ւ այս ժամացույցը, թող ես գնամ: Հասկանո՞ւմ ես, եթե ուղեկալից գան՝ նորից փաստա-



digitised by A.R.A.R.@

*թուղթ են պահանջելու, իսկ ես մոռացել եմ տանը: Իզուր ժամանակ եմ կորցնելու:*

*Իշխանը մտքում հաշվում էր Վալերիկի անցած ճանապարհը՝ հիմա երևի հասել է ուղեկալ, հիմա սահմանապահների հետ դուրս կգան...*

*Անսպասելի մի հարված տղային տապալեց գետին: Ոտքի տակից հողը փախավ: Մի վայրկյան նա մոռացավ, թե որտեղ է ինքը,ուր է Վալերիկը, ում հեռացող ոտնաձայնն է լսում:*

*Երբ դանդաղ աչքերը բացեց, նա տեսավ փախչող մարդուն: Եթե մարդը բլուրի ետևն անցներ, դժվար կլիներ նրան գտնել:*

*— Ասլա՛ն, հասի՛ր,— բղավեց տղան ու ոտքի թռավ:*

*Ասլանը քամու նման սուրաց առաջ, հարձակվեց անծանոթի վրա: Անծանոթը փորձում էր պաշտպանվել շան սուր ատամներից՝ հետ էր, անօգնական տարածում ձեռքերը:*

*Մինչ այդ Իշխանը նորից հասավ, գրկեց անծանոթի մեջքը ու երկուսով էլ թավալվեցին խոտերի մեջ:*

*Սկսվեց մի անհավասար մարտ: Անծանոթը անխնա հարվածներ էր տեղում: Իշխանի աչքի տակ ուռուցք առաջացավ, ոտքը սարսափելի ցավում էր, թևը թուլացել էր, բայց անծանոթին բաց չէր թողնում: Աշխատելով խույս տալ հարվածներից, ամուր գրկած անծանոթի մեջքը, Իշխանը սպասում էր:*

*Ժամանակը դեռ երբեք այսքան դանդաղ չէր ընթացել: Հանկարծ անծանոթը դադարեց հարվածներ տեղալ: Նա թուլացած ընկավ գետնին: Իշխանը կզաց, որ գլխավերևում մարդիկ երևացին. սահմանապահներն էին: Ուժասպառ եղած տղան բաց թողեց մարդուն: Վալերիկը գրկեց ընկերոջը.*

*— Ես քամու նման էի վազում:*

*Իշխանը կարողացավ ժպտալ:*

*— Գնանք,— ասաց սահմանապահ Յուրան:*

*Տղաներին անծանոթի հետ ուղեկալ տարան:*

*Հետո հանդիսավոր պայմաններում տղաներին հանձնեցին պատվոգրեր: Հետո պատանիների սխրանքի լուրը հասավ շրջկենտրոն, Երևան, Մոսկվա: Տղաները ընտրվեցին պիոներների համամիութենական 4-րդ հավաքի պատգամավորներ, մեկնեցին Լենինգրադ: Դեռ տղաները չէին վերադարձել, Լենինգրադից հեռագիր ստացվեց:*

*Ոսկեհասկի դպրոցի աշակերտներ Իշխան Սերոբյանը և Վալերիկ Սարգսյանը պարգևատրվել էին Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակին նվիրված հոբելյանական հուշամեդալով:*

*Օրեր են անցել:*

*Տղաները շարունակում են իրենց բարեկամությունը սահմանապահների հետ:*

---

ՀԱՅԿ ԲԱԴԱԼՅԱՆ

## ՅՈԹՆՕՐՅԱ ՇԱԲԱԹ

Յոթնօրյա շաբաթը օրացուցային հաշվումների կարևոր ու գործնական միավորներից մեկն է, որի գործածությունը շատ հին ծագում ունի: Բացի յոթնօրյա շաբաթից, որոշ ժողովուրդներ տարբեր ժամանակներում կիրառել են հնգօրյա և տասնօրյա շաբաթներ: Շաբաթը յոթ օր հաշվելու մասին գոյություն ունի երկու կարծիք. ըստ առաջին կարծիքի՝ յոթնօրյա շաբաթը կապված է Լուսնի փուլերի հետ, քանի որ նորալուսնից մինչև առաջին քառորդը կամ առաջին քառորդից մինչև լիալուսին ընկած ժամանակամիջոցը հավասար է մոտավորապես 7—5 օրվա: Համաձայն երկրորդ կարծիքի, յոթնօրյա շաբաթվա հասկացողությունը կապված է յոթը լուսատուների (Արեգակ, Լուսին, Մարս, Յուպիտեր, Սատուրն, Վեներա և Մերկուրի) թվի հետ: Դրա համար էլ արևմտյան և այլ ժողովուրդների մոտ շաբաթվա օրերի անունները կապել են այդ լուսատուների անունների հետ՝ հետևյալ հերթականությամբ.

Երկուշաբթի—Լուսնի օր,

Երեքշաբթի—Մարսի (Հրատի) օր,

Չորեքշաբթի — Մերկուրիի (Փայլածուի) օր,

Հինգշաբթի—Յուպիտերի (Լուսնթագի) օր,

Ուրբաթ —Վեներայի (Արուսյակի կամ Լուսաբերի) օր,

Շաբաթ—Սատուրնի (Երևակի) օր,

Կիրակի—Արեգակի օր:




Մոլորակների անունները կապված են հին հեթանոսական աստվածների անունների հետ և ոչ ոք հնագույն շրջանում չէր համարձակվի ասել, որ այդ լուսատուների թիվը յոթից ավել է կամ պակաս: Դա կհամարվեր մեծ հանցագործություն և սրբապղծություն, որովհետև կհա-



digitised by A.R.A.R.@



ին ժամանակ մեր երկրում երջերու շատ է եղել: Նույնիսկ այն վայրերում, որոնք հիմա մերկ են՝ Սևանի ավազանում և Վեդիից արևելք ձգվող լեռներում, որ հնում Ուրծի լեռներ էին կոչվում: Այդ վայրերից գտնված են եղջերվի ոսկորներ: Ամեն մեծության եղջյուրներ հանվում են մանավանդ Սևանի հատակից:

Վերացան այդ վայրերի անտառները, վերացան նաև նրանց բնակիչները, որովհետև եղջերուն անտառային կենդանի է, ապրում է անտառի բարիքներով և թաքնըվում է նրա թավուտներում:

Այնուամենայնիվ, մինչև Առաջին համաշխարհային պատերազմը եղջերվի մեծ ու փոքր նախիրներ դեռևս հանդիպում էին հյուսիսային Հայաստանի անտառներում և Զանգեզուրի լեռներում: Պատերազմի ժամանակ վենքը շատացավ, կրակոցն էլ հետը: Հալածվեցին-կոտորվեցին մեր երկրի եղջերուները, իսկ կենդանի մնացածները փախան Կովկասյան լեռներն ու այլևս ետ չեկան: Մեր բնությունը զրկվեց իր գեղանի թագուհուց՝ կովկասյան ազնիվ եղջերվից, ինչպես նրան կոչում են կենդանաբանական գրականության մեջ:

Մոտ 40 տարի Հայաստանը մնաց առանց երջերվի: Մտածեցին եղջերուներ ներմուծել և բաց թողնել մեր անտառներում, բայց կովկասյան երջերուն քոչվոր կենդանի է, դժվար թե հաստատվի մեր երկրում: Հիշում եմ, մանուկ ժամանակս եղջերվի նախիրները ամեն աշնան մեր սարերից (Բազումի լեռներ) քոչում էին դեպի իրենց ձմեռային արոտները՝ Խրամ գետի հովիտը՝ Կարայազ: Անտառոտ ու կերառատ այդ հովտում անց էին կացնում ձմեռը, իսկ գարնանը վերադառնում էին մեր սարերը՝ «ամառանոց», ուր և սերունդ էին տալիս: Եղջերուներ կներմուծեք, նրանք էլ կքոչեն ձմեռանոց ու այլևս ետ չեն գա, ինչպես որ չեկան 1915 թվականին:

Պետք էր գտնել նստակյաց կյանք վարող եղջերու: Այդպիսին կա Հեռավոր Արևելքում, դա բծավոր եղջերուն է: Նա փոքր է կովկասյան իր ցեղակցից. բարձրությունը 90—115 սմ է, կշիռը՝ 80—150 կգ: Ունի կարմրավուն, սիրուն մորթի, որ ծածկված է ճերմակ խալերով: Դա նրա ամառային հանդերձանքն է: Ձմռան և գարնան ընթացքում գորշ-մոխրագույն է, իսկ մորթու վրայի խալերը գրեթե չեն նկատվում: Շատ արժեքավոր են նրա դեռևս խակ եղջյուրները, որոնցից Արևելքի հեքիմները մարդուն երիտասարդացնող «հրաշք դեղ» են պատրաստում, իսկ մեր դեղագործները՝ «պանտոկրին» նշանավոր դեղը: Դեղ ստանալու նպատակով նույնիսկ եղջերվաբուծական հատուկ սովխոզներ կան Հեռավոր Արևելքում: Մի էական տարբերություն ևս կա բծավոր և կովկասյան եղջերուների միջև. առաջինի հղիության շրջանը մեկ և կես ամիս պակաս է (յոթ և կես ամիս, իսկ ազնիվ եղջերվինը՝ 9 ամիս):

Վազքը հեզանազ է և թվում է, խաղ է անում անտեսանելի քամու հետ: Իսկ թռիչքը... Իր թռիչքով հայտնի վագրը առանց թափ առնելու 6 մետրից ավելի չի կարող թռչել: Իսկ եղջերո՞ւն: Մի անգամ, Մոսկվայի կենդանաբանական այգում մարդիկ շղթա են տալիս և բծավոր եղջերուներին քշում դեպի ցանկապատի անկյունը՝ նրանց բռնելու նպատակով: Հանկարծ բոլոր 14

---

կապեր կրոնին: Այդ լուսատուները անցյալում հանդիսացել են գուշակարաններ, երազահաններ կազմելու միջոց:

Հին մեքսիկացիները ունեցել են երկու տեսակ շաբաթ՝ մեկը հնգօրյա, մյուսը՝ յոթնօրյա, բացի այդ, ենթադրվում է, որ նրանք ունեցել են նաև 13-օրյա շաբաթ:

Չինացիները յոթնօրյա շաբաթվա փոխարեն մինչև վերջերըս ունեցել են 10-օրյակ, նրանք ամիսը բաժանել են երեք մասի: Այս բանը չինացիներից ընդօրինակել են կորեացիները, ճապոնացիները և մոնղոլները:

Արևելյան ժողովուրդները շատ վաղ ժամանակներից շաբաթվա օրերը անվանել են թվարկության հերթականությամբ, այսինքն՝ միաշաբթի, երկուշաբթի, երեքշաբթի, չորեքշաբթի, հինգշաբթի, պարասկևի և շաբատո: Շաբաթվա օրերը այսպես են անվանել բաբելացիները, հին հրեաները, հայերը, հույները և այլն: Պարասկևի նշանակում է նախապատրաստվել, իսկ շաբատո եբրայերեն նշանակում է հանգիստ: Հնում եբրայեցիները հանգստի օրը համարել են շաբաթ օրը: Դրա համար մեկ օր առաջ նախապատրաստվում էին շաբաթ օրվա հանգիստն անցկացնելու համար:

Անհրաժեշտ է հիշատակել, որ վրացիների օրացույցում շաբաթվա 5-րդ օրը նույնպես կոչվում է պարասկևի: Հայերի մոտ պարասկևիի փոխարեն ընդունված է ուրբաթ, որը առաջացել է ասորերեն «ռուբաթ»՝ նախապատրաստվել բառից:

Հետագայում, քրիստոնեական գաղափարների տարածման շրջանում, քրիստոնեական եկեղեցին որոշում է ընդունել միաշաբթի օրը վերանվանել կյուրակե և շաբաթ օրվա փոխարեն այն համարել հանգստի օր, որը կապված է Հիսուս Քրիստոսի հարություն առնելու առասպելի հետ: Կիրակի հունական «կյուրակե» բառն է, որ նշանակում է՝ տերունական:

Քրիստոնեական դավանանքը ընդունած ժողովուրդները հետագայում հանգստի օրը համարել են կիրակին, հրեաները՝ շաբաթ օրը, իսկ մահմեդականները՝ ուրբաթ օրը: Թուրքիան 1935 թվականից պաշտոնական հանգստի օրը համարել է կիրակի օրը:



digitised by A.R.A.R.@

ՎԱԽԹԱՆԳ ԱՆԱՆՅԱՆ

# ՄԵՐ ԱՆՏԱՌԻ ԳԵՂԻՐԱՆ ԹԱԳՈՒՀԻՆ



եղջերուներն էլ շուռ են գալիս և ցատկում մարդկանց գլխի վրայով... Չափում են՝ 11 մետր է ստացվում: Տասնմեկ մետրանոց թռիչք՝ տեղից, առանց թափ առնելու...

Ահա ինչպիսի կենդանիներ են ներմուծված Հայաստան: Խոսրովի անտառում մեր կառավարությունը 1954 թվականին այդ եղջերուներից բաց թողեց 19 գլուխ, որից 15-ը մայրեր էին: Ապա մի քանի տարի հետո 18 գլուխ ևս բաց թողեցին: Զարգացան այդ կենդանիները Արշակունյաց Խոսրով թագավորի երբեմնի որսավայրում: Փորձը հաջող անցավ, Հեռավոր Արևելքի բնակչին դուր եկավ մեր բնությունը: Դրանից խրախուսված՝ 1969 թվականին 50-ական եղջերուներ բաց թողնվեցին նաև Ծաղկունյաց լեռներում և Հաղարծնի (Դիլիջանի) անտառներում: Իսկ անցյալ տարի Ծաղկունյաց լեռները ստացան նորից 50 եղջերու: Մի այդքան էլ Դիլիջանից հարավ տարածվող անտառներն ստացան:

Այսպիսով, մեր բնությունը ստացավ իր նոր թագուհուն՝ գեղիրան, հեպանապ, պճնագեղ մի արարածի:



Ծանոթանանք մեր բնության այդ նոր բնակչի կենցաղին:

Գարնան տաք օրերին ձագ է բերում անտառի մի գաղտնարանում, ուր և մի քանի օր իր բալիկին թաքցնում է «չար աչքից», մինչև որ նրա ոտքերն ամրանում են և կարողանում է փախչել վտանգից: Երբեմն կույգ է ծնում: Ձագն աշխարհ բերելուց հետո մայր եղջերուն դառնում է պգոն և գրգռված: Նա արթուն պահակի նման շրջում է իր ձագի թաքստոցի շուրջը:

Արագ է աճում եղջերվի ձագը. Երևանի կենդանաբանական այգում, ծնվելուց 12—13 օր հետո, բծավոր եղջերվի ձագերն արդեն վազվզում էին իրենց մայրերի հետևից և, մայրական կաթից բացի, ուտում էին կանաչ տերևներ, խոտ, պտուղներ: Խոսրովի անտառում գարնանից մինչև աշուն բծավոր եղջերուն արածում է լեռնաստորոտներում և անտառեզրին, իսկ խոր ձյան ժամանակ իջնում է հովիտները և լեռների արևկող ու քարքարոտ լանջերը: Այդ ժամանակ ուտում է նաև թփերի բողբոջները և ծառերի մատղաշ ընձյուղները: Ծառի ներքին ճյուղերը մաքրակարդելուց հետո, ողջ հասակով մեկ կանգնում է հետին ոտքերի վրա և դունչը հասցնում վերին ճյուղերին:

Առհասարակ պահանջկոտ չէ կերի նկատմամբ և ուտում է նույնիսկ այնպիսի բույսեր, որոնք ընտանի անասունները չեն ուտում. օրինակ, վայրի սխտոր և հովտաշուշան: Երբ ձյունը շատ խորն է՝ ասենք 40 սանտիմետր, այն ժամանակ առջևի ոտքերի կճղակներով ետ է տալիս ձյունը, բացում նրա տակի խոտը և ուտում:

Խոսրովի անտառում ամեն աշնան այստեղ-այնտեղ դուք խոտի բլրակներ կտեսնեք. եղջերուների ձմռան կերն է, որ կուտակում են որսարգելանոցի աշխատողները:

Մարդամոտ և շուտ ընտելացող կենդանի է բծավոր եղջերուն: Որսարգելանոցներում հաջողվում է նրանց գրավել կանաչ կերով, քաղցր պտուղներով, մոտենալ և երբեմն էլ նույնիսկ ձեռքով շոյել: Իսկ Տուշովիցեի (Չեխոսլովակիա) անտառում մի խումբ եղջերուներ կանգ առան և աներկյուղ այնքան նայեցին ինձ, որ հաջողեցրի ֆոտոապարատս պատրաստել և լուսանկարել նրանց: Դրագա վերադառնալիս մի մայր եղջերու կանգնել էր մեր ճամփի կենտրոնում և հետաքրքրությամբ նայում էր մոտեցող ավտոմեքենային...



digitised by A.R.A.R.@

ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

# ՀԱՅԱՍՏԱՆ ԲԵՐՎԱԾ ՈՒՇԱԳՐԱՎ ԾԱՌԱՏԵՍԱԿՆԵՐ

## ՋՈՆՋՈԼ (Ստաֆիլեա)



Թուփ է մինչև 5 մետր բարձրությամբ: Հանդիպում է միայն հյուսիսային Հայաստանի անտառներում: Ծաղիկները սպիտակ են, ողկույզներով, թեթևակի վարդագույն երանգով: Ծաղկում է մայիսին, պտուղները հասունանում են հուլիսին:

Արժեքավոր մեղրատու բույս է:

Ջոնջոլի փայտանյութը խիստ արժեքավոր է, սակայն արդյունաբերական նշանակություն չունի, քանի որ թուփ է և փայտանյութի քանակը աննշան է:

Հյուսիսային Հայաստանի բնակիչները ջոնջոլի ծաղիկներից թթու են պատրաստում:

## ԳՈՒՏԱՊԵՐՉԻ ԾԱՌ (Էուկոմիա)

Մինչև 20 մետր բարձրությամբ ծառ է: Ընձյուղները ոսկե-դարչնագույն են: Ծաղիկները մանր են, կարմրա-դարչնագույն: Պտուղները թևավոր ընկուզիկներ են: Ծաղկում է ապրիլին, պտուղները հասունանում են սեպտեմբեր-հոկտեմբերին:

Տարածված է կենտրոնական և արևմտյան Չինաստանում: Հայաստան է բերված մոտ տասը տարի առաջ: Ներկայումս աճում է միայն Կիրովականի բուսաբանական այգում և Իջևանի մերձարևադարձային կուլտուրաների տնկարանում: Հաջողությամբ կարելի է մշակել հյուսիսային Հայաստանի շրջաններում:

Բույսի բոլոր օրգաններում մեծ քանակությամբ գուտապերչ է պարունակվում: Դրանում կարելի է համոզվել, եթե կտրենք տերևը և կտրված մասերը զգուշությամբ ձգելով հեռացնենք իրարից:

Էուկոմիայից ստացված գուտապերչը չափազանց արժեքավոր է: Տերևների մեջ պարունակվում է մինչև 2—4 տոկոս, իսկ կեղևում և ցողունում 5—6 տոկոս գուտապերչ: Չինացիները այս բույսի արմատները և կեղևը օգտագործում են բժշկության մեջ, հատկապես լյարդի և երիկամների մի շարք հիվանդություններ բուժելու համար:



Գուտապերչ ստանալու համար սովորաբար օգտագործում են էուկոմիայի տերևները, տարվա ընթացքում կատարելով երկու բերքահավաք:

Լավ կլիներ էուկոմիան աճեցնել դպրոցամերձ հողամասում: Կտրոններ և սերմեր կարելի է ձեռք բերել Կիրովականի բուսաբանական այգուց:

## ՄԱՏԻՏԱԾԱՌ (Վիրգինյան գիհի)

Գիհիները Հայաստանում շատ են տարածված: Դրանք փշատերև ոչ խոշոր ծառեր են, կլոր պտուղներով և եռաձյուղ փշատերևներով: Հայաստանում հատկապես շատ է տարածված գարշահոտ գիհին, որի փշատերևները կեռ փշիկների են նման:



Վիրգինյան գիհին Հայաստանում մշակության մեջ հանդիպում է ամենուրեք: Հատկապես շատ կա Երևանում: Ամենատիպիկ օրինակներն աճում են օպերայի շենքի առջև, Թումանյան փողոցի և թատերական հրապարակի միջև:

Մատիտածառ է կոչվում, քանի որ սրա փայտանյութից պատրաստում են մատիտի փայտյա մասերը:



## ԽՆԿԻ ԾԱՌ (Պիստացեա)

5—10 մ. բարձրությամբ, լայն, գնդաձև սաղարթով ծառ է: Չափազանց չորադիմացկուն է:

Հայաստանում տարածված է չոր, քարքարոտ լանջերում, որտեղ այլ տեսակի ծառեր աճել չեն կարող: Մշակության մեջ քիչ է հանդիպում:

Բնափայտը արժեքավոր է, քանի որ պիտանի է կարդաքանդակներ պատրաստելու համար: Խեժանյու-



digitised by A.R.A.R.@

թերի մեծ պարունակության շնորհիվ այրվելիս դուրեկան բուրմունք է արձակում (այստեղից էլ անվանումը՝ «խնկի ծառ»):

Պտուղները չափազանց սննդարար են: Պարունակում են մեծ քանակությամբ ճարպեր, ազոտային միացություններ, սախարոզա, վիտամիններ և այլն: Օգտագործում են հրուշակեղենի արտադրության մեջ, ինչպես նաև շոկոլադի ամենաընտիր տեսակների պատրաստման, երշիկեղենի արտադրության մեջ: Պատրաստում են նաև սուրճի սուռոգատ: Արտադրության մնացուկները հրաշալի սնունդ են թռչունների և կանաչյան ընտանի կենդանիների համար:

Այս բոլորից բացի, խնկի ծառի պտուղները բուժիչ նյութեր են պարունակում, բարձրացնում են մարդու աշխատունակությունը, թարմացնում նրան: Ահա թե ինչու խնկի ծառին անվանում են նաև «կյանքի ծառ»:

**ԹՈՒՆԱՎՈՐ ՍՈՒՄԱԽ**

(Տոքսիկոդենդրոն)



Թուփ է մինչև երեք մետր բարձրությամբ: Տերևները եռակի են: Կորիզապտուղները գլնդաձև են, ծաղիկները՝ դեղնավուն:

Տարածված է Հյուսիսային Ամերիկայում: Հայաստանում մշակվում է միայն բուսաբանական այգիներում:

Բույսի բոլոր օրգանները խիստ թունավոր են: Վտանգավոր է նույնիսկ այս բույսին ձեռք տալը, քանի որ ուժեղ այրվածքներ է առաջացնում և երկար ժամանակ ցավերը չեն անցնում: Առավել վտանգավոր է շփվել բույսի հետ, երբ մաշկի վրա թեկուզ աննշան վնասվածքներ կան: Թունավորման պատճառ է հանդիսանում բույսի օրգաններում պարունակվող կաթնահյութը, որը օդի ազդեցության տակ խիկույն գործանում է:

Թունավոր սումախը խիստ արժեքավոր բույս է և շատ վաղ ժամանակներից օգտագործվում է բժշկության մեջ: Տերևներից հատուկ բուժանյութ են պատրաստում հոդացավի դեմ, ինչպես նաև ներվային մի շարք հիվանդությունների բուժման համար: Կաթնահյութից սև ներկ են պատրաստում: Բույսի կեղևը պարունակում է խիստ թունավոր նյութ՝ լոբիտին:

Այս բույսը պետք է լավ ճանաչել և խիստ զգուշանալ նրանից: Թունավոր սումախով ուժեղ թունավորումը վտանգավոր է կյանքի համար:

Թունավոր սումախը աշնան ամիսներին ստանում է վառ արնակարմիր գունավորում, խիստ կերպով առանձնանալով մյուս բույսերից:

Լույս է տեսնում 1923 թվականից



# ՊԻՈՆԵՐ

№ 5 մայիս 1971 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ


Մայիսի 1-ը — Վ. ԿԱՐԵՆՑ . . . . . . . . 2
Խնձորի ծառը զարթնեց — Վ. ԲԱՐԱՅԱՆ . . . . 2
Մայիսյան վերնուշ — Ա. ՍԱՐՈՅԱՆ . . . . . 3
Կտրված ծառերի խշշոցը — Հ. ՎԱՐԴԱՆՅԱՆ . . . 3
Հասունացում — Ա. ԱՎԱԳՅԱՆ . . . . . . 4
Մտքում գրված շարադրություն — Լ. ԲԱՌՆԱԿՅԱՆ . . 8
Հայրս — Ն. ԶԱՐՅԱՆ . . . . . . . . 9
Իմ շնիկը — Ս. ՄԱՐՈՒՔՅԱՆ . . . . . . . 10
Մայիսյան վերնուշ — Վ. ՍԱՐՈՅԱՆ . . . . . 12
Մեր սիրելի Արտոն — Ա. ԱԴՈՅԱՆ . . . . . 14
Պատանի Առաքելը — Ա. ԱՅՎԱԶՅԱՆ . . . . . 15
Տաքնի ողբերգությունը — Գ. ՄԱՆՈՒԿՅԱՆ . . . . 16
Բնության բարեկամները — Վ. ՄԽԻԱԿՅԱՆ . . . . 16
Մանուշակը — Պ. ՍԵՎԱԿ . . . . . . . 17
Սահմանի մոտ — Ա. ՓԱՐՍԱԴԱՆՅԱՆ . . . . . 18
Ցորենօրյա շաքար -- Հ. ԲԱԴԱԼՅԱՆ . . . . . 19
Մեր անտառի գեղիրան թագուհին — Վ. ԱՆԱՆՅԱՆ . . 21
Հայաստան բերված ուշագրավ ծառատեսակները — Լ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ . . . . . . . . . 22
Ընկույզները — Ս. ԽԱՐԱԶՅԱՆ


*Շապիկի առաջին էջը՝*

*նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ*

Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատասխանատու քարտուղար), ԽՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ Գր., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԵԼԻՔՅԱՆ Ս., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր), ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս.

**«Пионер»** на армянском языке. Адрес редакции:
Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

*Հասցեն՝ Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15, Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96:*

ՎՖ 05918: Պատվեր՝ 272: Տպաքանակ՝ 71700: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 7/V 1971 թ.: ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության վարչության Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ: Երևան, Տերյան փ. № 91:

Գինը՝ 10 կ.





digitised by A.R.A.R.@



ՍԱՐԳԻՍ ԽԱՐԱԶՅԱՆ

## ԸՆԿՈՒՅԶՆԵՐԸ

Մեկն ընկույզ է կոտրում ահա՝
Ձեռքին բռնած փոքրիկ մի մուրճ
Եվ պարմացած կանչում է նա.
— Այս ինչու՜ են բոլորը փուչ:—
Այդ ժամանակ ձայնով դողդոջ
Մի ընկույզ է խոսում լռին.
— Փոքրի՛կ տղա, ամռանը ողջ
Ձեռք չտվիր դու մեր ծառին:
Չպտվացրիր նրան ջրով,
Նա լաց եղավ ամռանն անձայն,
Չներկեցիր ծառը կրով,
Եվ որդերը մեջ տիրացան:
Դու ինչո՞ւ ես տխրում հիմա,
Որ մենք այսպես չոր ենք ու փուչ,
Քո բաժինը, փոքրի՛կ տղա,
Այն որդերն են կերել վաղուց:

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

digitised by A.R.A.R.@